

*Սփյուռքահայ երեխաները աշխույժ զրույցի են բռնվել պատանի երգահան և դաշնակահար Զոհրաբ Փարեմուզյանի հետ։*

Լուսանկարը՝ Զ. ԲԵՏԻԿՅԱՆԻ

# ՀԱՅՐԵՆԻ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

Երևանի օդանավակայանում հավաքվել էին պիոներներ, դպրոցականներ և մեծահասակներ: Բոլորը հուզված էին, բոլորն անհամբեր սպասում էին:

Վերջապես կապույտ երկնքում երևաց արծաթաթև ինքնաթիռը: Սկսվեց աշխույժ մի իրարանցում: Ու երբ բացվեց ինքնաթիռի դուռը, այնտեղից իրար հրմշտելով դուրս եկան մրահոն և սևաչ, թուխ և շիկահեր պատանիներ: Նրանք կարոտով նայում էին կապույտ-կապույտ երկնքին, հեռուներում շողշողում ալեհեր Մասիսն ու սիգապանծ Արագածը: Ուրախության արցունք կար տարագիր հայորդիների աչքերում:

Նրանք եկել էին աշխարհի տարբեր ծայրերից՝ Երուսաղեմից ու Ֆրանսիայից, Լիբանանից և Սիրիայից, Կիպրոսից ու Ամերիկայից, Եթովպիայից և Հորդանանից: Եկել էին սեփական աչքերով տեսնելու գրքերից ու նկարներից ծանոթ սիրելի հայրենիքը, լսելու մեսրոպ-



## ՍԵՊՏԵՄԲԵՐ

*ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Սեպտեմբերը եկավ նորից.
Փչեց փողը հանդում, սարում,
Ողջ աշխարհին աշուն բերեց,
Իսկ դպրոցին բերեց գարուն։

Ով գալիս է ամռան դաշտից,
Ծաղկի նման է ծիծաղում,
Սարից իջած մանկան քուրթին
Սարի հովն է մեղմիկ խաղում։

Աղմկեցին փողոց ու բակ
Մանուկներով ծիծաղաճայն,
Մայր դպրոցի գիրկը նրանք
Հավքերի պես վերադարձան։

Ջրնգում են ինչպես զանգեր
Սրտերն ուրախ ու արևոտ,
Արտեկից է մեկը եկել,
Աչքերի մեջ՝ մի ծով կարոտ։

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶ
ՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆ
ՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



Լույս է տեսնում
1923 թվականից

№ 9 ՍԵՊՏԵՄԲԵՐ
1966 Թ.

յան քաղցրահնչյուն հայոց լեզուն: Եկել էին տեսնելու, զգալու, հանգստանալու:

Հայ մանուկները հայրենիքում քայլում էին ու բոլորովին չէին հոգնում: Նրանք ուզում էին ամեն վայրկյանն օգտագործել մի նոր ու հարազատ բան տեսնելու համար: Սփյուռքահայ երեխաները կբռ-սաշրջիկներից շատ էին լսել հայ գրապահոցի մասին: Լսել էին միայն, կարդացել, իմացել և հիմա հուզմունքով, դանդաղ բարձրանում էին Մատենադարանի աստիճաններով, շոշափում յուրաքանչյուր քարը որպես մի խաչքար, դիտում մեր հերոսական պատմությունը անմահացնող հնադարյան մագաղաթները, արտասվաթոր աչքերով կմկմում էին Խորենացու և Եղիշեի տողերը:

Երևանում և ամենուր, ուր էլ որ լինում էին նրանք, լսում էին միայն հարազատ հայերենը, լսում էին և ուրախանում:

—Ինչ բախտավոր են այստեղի մանուկները, հոս բոլորը կխոսեն հայերեն:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԱՐԲԱՏՅԱՆԻ

Գալիս է նա, ով արշավի
Դրոշակն է առաջ տարել,
Գալիս է նա, ում ճամփեքին
Արեգակն է թմբկահարել։

Եվ նրանք են գալիս, որ նոր
Աշակերտ են այսօր դառնում,
Հազար կողմից հին դպրոցի
Մանկությունն է վերադառնում։

—Համարձակ կգգամ հայրենի տանս մեջ, կտեսնիմ հայրենիքում ցուցանակներ, որ գրված են հայերեն, կտեսնիմ Արարատը, որ գրված ունիմ սրտիս մեջ: Երազ ունեի, երազանքս իրականություն դարձավ,—ուրախ ասում էր փոքրիկ Դավիթը, որի ծնողները սասունցիներ են:

Բոլորը հիացմունքով էին խոսում հայրենիքի մասին: Միայն ամերիկահայ փոքրիկ Պողոսը (Պոլին) չէր կարող խոսել: Նա ծնվել ու ապրում է Ամերիկայում, սովորում է անգլերեն, ցավոք սրտի, տանն էլ խոսում են անգլերեն: Հայերեն ոչ մի բառ չգիտեր Պոլին: Երբ գնացին Սևան, նա առաջինը իջավ ավտոմեքենայից, արագ վազեց դեպի լիճը, ձեռքերով մի ափ ջուր լցրեց վրան. և արտասվախառն ու կեսուրախ, կեստխուր աչքերով նայեց շուրջը: Մենք հասկացանք Պողոսին, նրա աչքերը շատ պարզ ու մաքուր հայերենով ասում էին. «Ի՜նչ գեղեցիկ է հայրենիքս»:

Երեխաները ամենուր հանդիպում էին ժպտացող դեմքերի, գուրգուրող ձեռքերի: Նրանք երբեք չեն մոռանա Դիլիջանը: Այստեղ տեսան հայ երգահաններ Առնո Բաբաջանյանին, Ալեքսանդր Հարությունյանին, Էդվարդ Միրզոյանին, Ալեքսանդր Աճեմյանին, որոնց միայն ստեղծագործություններն էին լսել ռադիոյով, կարմացան փոքրիկ Զոհրապ Փարեմուզյանի հրաշալի ստեղծագործություններով: Իսկ ինչքան ջերմ ու սրտառուչ էր նրանց հանդիպումը սիրելի բանաստեղծուհի Սիլվա Կապուտիկյանի հետ:

Հայ մանուկները եղան նաև Կիրովականում և Լենինականում: Պիոներական ճամբարներում հանգըստացող մեր երեխաների հետ նրանք էլ էին մասնակցում սողանին, գնում արշավների: Երբ իջնում էր մթնշաղը և շեփորների ազդարարումով սկսվում էր ուրախ ժամանցը, նրանք էլ էին պիոներների հետ երգում, սովորում նոր պարեր, բանաստեղծություններ, զվարճալի խաղեր: Նրանք էլ էին հուզմունքով արտասանում Թումանյանի, Թեքեյանի, Սիամանթոյի, Կապուտիկյանի հայրենաշունչ ոտանավորները...

Ու հիմա տանը, ծնողներին ու հարազատներին, ընկերներին ու բարեկամներին նրանք երկար պատմում են հայրենիքի և հայ ժողովրդի վերածննդի մասին: Նրանք կպատմեն և կհայտնեն բոլորին, որ սփյուռքի հայության համար Արաքսի ափին հուսալի և ամուր հող կա: Այդ հողը Սովետական Հայաստանն է:

Կ. ՍԱՐՎԱՋՅԱՆ



# Չորս ոսկեգույն կոճակ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

— Աշո՛տ։

— . . . . . . .

— Աշո՛տ։

— . . . . . .

— Ա՛յ Աշոտ...

Աշոտը մտահոգ պտտվում է տիեզերանավի շուրջը և վերջին կարգադրություններն է անում։ Տասնինը րոպե հետո (նա նայում է ձեռքի ժամացույցին) «Լուսին — 1»-ը թռչելու է դեպի Լուսին, իսկ Տիգրանը դեռ չկա։ Ո՞ւր է կորել այդ ակնոցավոր դմբոն։ Երևի վերջին րոպեին էլի մի կարևոր բան է մոռացել։ Պարզ է, առանց դրա չի կարող։

— Աշո՛տ...

Ահա, այս կաթնակերն էլ մի կողմից. մի գլուխ պտույտ է գալիս իր ընծառու Քոթոթի հետ։

— Ոտքի տակ մի՛ ընկնիր։

— Ինձ էլ տար, էլի, ի՞նչ կլինի...

— Այնտեղ մանկապարտեզ չկա։

— Ախր ես մանկապարտեզ չեմ գնում...

— Ավելի վատ։ Որ գնայիր, այսքան գլուխ չէիր տանի։ Իսկ Քոթոթը բոլորովին բացառված է... (Աշոտը սիրում է մեծական բառեր գործածել)։ Մի անգամ արդեն տիեզերքում շուն եղել է և հերիք է։ Կարիք չկա երկինքը շներով լցնել։

— Ախր նա Լայկան էր, իսկ սա Քոթոթն է,— փորձում է հարցի մեջ պարզություն մտցնել Մհերը։

— Մեկ է, երկուսն էլ մի շուն են,— անհողդողդ է մնում Աշոտը։ — Եվ, առհասարակ, ի՞նչ ես գտել այդ Քոթոթի մեջ։ Ամբողջ օրը քարշ ես գալիս հետևից, ասես մի կարգին շուն է՝ բուլդոգ, սեն-բեռնար կամ որևէ... դոբերման... (Մի տես՝ ի՜նչ անուններ է տալիս։ Որտեղի՞ց էլ այդքան բան գիտի...) Սովորական շան լակոտ է, էլի, նույնիսկ չի կարողանում ականջներն ուղիղ պահել։

Մհերը խորապես վիրավորվեց, բայց վրդովմունքն արտահայտել չէր կարող. Լուսին թռչելու հույսը դեռևս չէր կորցրել։ Մի տես ինչպես է խոսում Քոթոթի մասին։ Ախր Քոթոթն աշխարհիս ամենալավ շունն է, և դա բոլորը գիտեն...

Մինչդեռ Քոթոթն այդքան ծանր ապրումներ չունեցավ։ Նա շատ պարզ ձևով արտահայտեց իր վերաբերմունքը Աշոտի խոսքերի հանդեպ. ոտքը բարձրացրեց ու բոլորի աչքի առաջ... «Լուսին — 1» տիեզերանավի պոչին, դրանով իսկ իր առաջ վերջնականապես փակելով տիեզերքի դռները։

Ճարպկությամբ խույս տալով կատաղած Աշոտի ոտքի հարվածից, Քոթոթը վայրկենապես հայտնվեց եղբայրների կանաչ պատի հետևում և այնտեղից պլստան աչքերով հետևում էր բակում ծավալվող իրադարձություններին։

Դա չլսված անպատկառություն էր Քոթոթի կողմից, և Աշոտը հարձակվեց Մհերի վրա.

— Լսի՛ր, ա՛յ, հիմիկվանից նախազգուշացնում եմ. քո այդ քոսոտ խրտվիլակը՝ Քոթոթ է, ինչ է, որտեղ ձեռքս ընկավ, շանսատակ եմ անելու, իմացած լինես... Ամեն տեսակ թափթփուկ, որ երկու ականջ ունի, չորս ոտք, կոչվում է շուն...

Մհերն ստիպված էր այդ վիրավորանքն էլ լռությամբ կուլ տալ, մանավանդ որ այս անգամ Քոթոթն իսկապես մեղավոր էր։ Այդպիսի՜ անհարգալից վերաբերմունք հանդես բերել «Լուսին — 1» տիեզերանավի հանդեպ... Դա չտեսնված-չլսված բան էր։

«Լուսին — 1»... Ախր երեք ամիս շարունակ այդ Աշոտը, գիտնական Տիգրն և Պեպեն Արտակը, բան ու գործ թողած, կորչում էին Արտակենց ցախանոցում։ Դպրոցից տուն դառնային թե չէ,

---

Այս համարից սկսած տպագրում ենք Խաչիկ Հրաչյանի «Չորս ոսկեգույն կոճակ» արկածային վիպակը։

պայուսակները նետում էին մի կողմ ու անցնում գործի։ Ոչ ոք չգիտեր, իհարկե, թե այնտեղ, ցախանոցում, ինչ էր կատարվում։ Միայն ներսից շարունակ թխկոց ու շխկոց էր լսվում, պատերի ճեղքերից ու կտուրից ծուխ էր բարձրանում ու մեկ էլ, թե որ ականջ դնեիր ցախանոցի սևացած դռանը, խորհրդավոր բզփզոցներ ու շշուկներ էին հասնում։ Սակայն, չգիտես ինչու, բոլորը համոզված էին, որ ցախանոցում պատրաստվում է լույս աշխարհ գալ ինչ-որ ցնցող, ապշեցուցիչ բան։ Ախր Աշոտը, որ «Հրթիռ» ֆուտբոլային թիմի կապիտանն էր ու կենտրոնական հարձակվողը, արդեն վաղուց է, ինչ չէր երևում խաղադաշտում, որի հետևանքով «Հրթիռը» հինգ անգամ է (հի՜նգ...), ինչ պարտություն էր կրում հարևան բակի «Արբանյակից»։ «Հրթիռի» տղաները երկար ժամանակ պտտվում էին ցախանոցի շուրջը, աշխատելով մի կերպ ներս ընկնել՝ Աշոտի հետ ինչպես հարկն է խոսելու համար, բայց իզուր։ Դրանից հետո նրանք անցան մորզեի այբուբենի, իբրև ապարատ օգտագործելով ցախանոցի դուռը։

Դա մի հետաքրքիր դուռ էր. բաց անելիս կամ փակելիս ծլնգացնում էր բոլոր տասնութ նոտաները, միայն փոքր-ինչ քմահաճ հերթականությամբ։ Տղաներն սկսեցին ծեծել այդ դուռն ու մորզեի այբուբենով խոսել ներսում փակված դասալիքների հետ (ավելի ճիշտ՝ դասալիքի, որովհետև Գիտնականն ու Արտակը հաշվի մեջ չէին)։ Ասենք, խոսում էին միայն դրսից, իսկ ներսից ձեն ու ձուն չկար, քար լռություն։



— Աշո՛տ (թը՛խկ)...

Լռություն։

— Աշո՛տ, լսիր (թը՛խ-թը՛խկ)...

Լռություն։ Չի լսում։

Աշո՛տ, լսո՞ւմ ես (թը՛խկ-թը՛խկ-թը՛խկ)...

Լռություն։ Չի լսում կամ չի ուզում լսել։

— Աշո՛տ, տե՛ս, դուռը կջարդենք...

Դուռը թափով բացվեց կրնկի վրա (դո-րե՜... ճռռ, վրզզ-սի-սի-մի-ֆա՜. ճռռ, վրզզ, ճը՜ռռռ...), և ներսից նախ թանձր ծուխ դուրս հորդեց, ապա հայտնվեց Աշոտը։ Նա առաջանում էր հոգնած, ճոճուն քայլերով, ինչպես ծովային հին գայլը նավի տախտակամածի վրա, ձեռքերն անփութորեն կախ գցած, դեմքը՝ մրոտ, շապիկը՝ սևացած, մազերը՝ թափված ճակատին։ Անխոս կանգ առավ դռան մեջ ու հենվեց շրջանակին։ Նրա ուսի վրայից տղաները տեսան Գիտնականի սև ակնոցն ու Արտակի պեպենոտ քիթը։ Ամբողջ ցախանոցը ծխում էր։

— Պահո՜,— զարմացան տղաները։— Էս հո աղվես եք բռնում։

Ոչ ոք չպատասխանեց։

— Իսկապես, ախր էս ի՞նչ եք անում,— հետաքրքրվեց Սեդրակը։

Աշոտը միայն ուսերը թոթվեց։

— Տղերք, չլինի՞ սրանք ծխից համրացել են։

— Հա, էլի...

— Աշո՞տ, խոսելո՞ւ ես, թե՞ ոչ,— հարցրեց Սեդրակը։

— Տասը օր հետո,— վերջապես ասաց Աշոտը և, ետ քաշվելով, դուռը հանդարտ ծածկեց Սեդրակի երեսին։

Տղաները մնացին շվարած ու տարակուսանքով իրար էին նայում։ Ապա հավաքվեցին իրար գլխի, ինչ-որ քչփչացին ու դուրս եկան բակից։ Երևի համոզվեցին, որ այդ ցնդածներից բան դուրս չի գա։

... Եվ այժմ ահա «Լուսին — 1» տիեզերանավը կանգնած է հարթակին, քիթը հանդգնորեն կապույտ երկնքին ուղղած, կազմ ու պատրաստ իր առաջին թռիչքին։

Աշոտը, որ դեռ զայրացած էր Քոթոթի դեմ (չնայած Արտակը ձեռքի լաթով անմիջապես մաքրեց նրա արարքի հետքերը), շարունակում էր շշպռել Մհերին, մինչդեռ Տիգրանը չկար ու չկար։ Ակնոցավոր սատանա։ Վերջին րոպեին միշտ մի բան պիտի պատահի նրան։ Թռիչքին մնում է ութ րոպե քառասուն վայրկյան։ Արտակին չուղարկե՞լ հետևից։ Բայց ուրտե՞ղ։ Այս ժամին հազիվ թե տանը լինի։ Արտակն էլ կկորչի, և այն ժամանակ... Իսկ ինչո՞ւ ոչ Մհերիկին։ Գոնե մի բան արած կլինի։

Այդ րոպեին շենքի հետևից երևաց Տիգրանը իր բարակ, լողլող հասակով։ Մազերը գզգզված էին, իսկ օձիքի կոճակներն՝ արձակ։ Ինչպես երևում է, ամբողջ ճանապարհին վազել էր և այժմ էլ դժվար էր շնչում։ Աշոտին տեսնելով, նա մեղավոր ժպտաց ու դեռևս հեռվից սկսեց ինչ-որ արդարացման խոսքեր մրթմրթալ։

Կապիտանն արդեն պատրաստվում էր հարձակվել իր օգնականի վրա, բայց այդ րոպեին Քոթոթն իր վրա հրավիրեց բոլորի ուշադրությունը. նա տագնապալի կլանչոցով դուրս թռավ թփերի միջից և, ոտների շուրջը պտույտներ գործելով, նորից նետվեց դեպի թփերը։ Դա կրկնվեց մի քանի անգամ, նոր կասկածություն հարուցելով Աշոտի մեջ։ Այդ շան լակոտն ամեն ինչ փչացնելու է։ Այսպիսի հանդիսավոր պահին, երբ «Լուսին — 1»-ի թռիչքին (առաջի՞ն թռիչքին...) մնում են հաշված րոպեներ՝ վեց րոպե հինգ վայրկյան, նա իր անտեղի հաչոցով ավելորդ խուճապ ու իրարանցում է առաջացնում։ Ով գիտի, ճա՞նճ է մտել քիթը, թե ինչ, և ահա խելագարի պես վազվզում է ետ ու առաջ...

Մհերիկը շան հետևից նետվեց դեպի թփերը։ Բոլորն սպասում էին, թե հետո ինչ է լինելու, իսկ Աշոտը ջղայնանում էր, իրեն ուտում։ Բանի տեղ են դնում այդ լկպորի հաչոցը։ Մի կարգին շուն լիներ, թե չէ...

Մհերը ձայն տվեց թփերի հետևից.

— Այստեղ... մի աղջիկ կա։

— Հետո՞ ինչ,— գրգռված վրա տվեց Աշոտը։

— Ոնց որ Սեդան լինի։

— Մե՜ծ բան... Ո՞ր Սեդան։

— Խաթուն տատիկի։

— Է՜, ի՞նչ է անում այդտեղ։

— Քնած է։

— Կարծես չէր կարող տանը քնել,— քթի տակ փնփնթաց Աշոտը, համենայն դեպս դեպի թփերը գնալով։ Բոլորը հետևեցին նրան։

Դա իսկապես Սեդան էր, Խաթուն տատիկի թոռնիկը՝ կարճ կտրած մազեր, սիրունիկ քիթ ու բերան, չթե կապույտ շոր, որ նրա միակ զգեստն էր (ոչ որ նրան ուրիշ շորով չէր տեսել)։ Ձեռքերը դրած գլխատակին, հանգիստ քնել էր իր համար։

— Հը՜մ...

Աշոտը շուռ եկավ։ Տիգրանն ակնոցը տնկել էր աղջկա վրա և ուշադիր զննում էր։

— Ի՞նչ «հը՜մ»...

— Սա Սեդան չի,— անառարկելի տոնով եզրակացրեց Գիտնականը։

— Ոնց թե... Բա ո՞վ է։

— Հիմա կիմանանք։ — Եվ նա չոքեց աղջկա կողքին։ — Արդեն արթնանում է։ Միայն թե շուկա մի՛ սարքեք,— փնփնթաց նա։

Բոլորը սսկվեցին։ Իսկապես, աղջիկն արթնանում էր. նա ձեռքերը հանեց գլխատակից, տարածեց աջ ու ձախ, գլուխը մի կողմ թեքեց, որի ժամանակ արևի շողքն ընկավ քթին և, վերջապես, բացեց աչքերը։ Աչքեր, ի՜նչ աչքեր. մեծ-մեծ, լեռնային լճակի պես հատակ ու խո՜րը-խորը։

Շուրջը արագ մի հայացք գցելով, նա վեր թռավ տեղից ու նետվեց դեպի Աշոտը։

— Գնա՛նք։

— Ո՞ւր,— զարմացավ Աշոտը։

— Ախ, ինչպե՜ս չես հասկանում,— հուսահատ զայրույթով բացականչեց աղջիկն ու ոտքը խփեց գետնին։ — Ախր մի շաբաթ է մնում...

— Ինչի՞ն է մի շաբաթ մնում։




Աղջկա աչքերում արցունք երևաց։

— Որ... որ հայրիկին կախաղան հանեն...

Աշոտը տարակուսանքով ուսերը թոթվեց. նա ոչինչ չէր հասկանում։

— Հը՜մ... Այդ, իհարկե, խիստ ցավալի է, բայց... ես ի՞նչ կարող եմ անել։

— Ախր դու Աշոտն ես,— բացականչեց աղջիկը,

և բացականչության մեջ հույս ու հուսահատություն խառնված էին իրար։

— Որտեղի՞ց գիտես, որ ես Աշոտն եմ,— անկեղծորեն զարմացավ Աշոտը։ Նա արդեն համոզվեց, որ դա Սեդան չի։ Սեդայի հայրը վաղուց չկար, այնպես որ չէր կարող մի շաբաթ հետո կախաղան հանվել։ Ուրեմն, ո՞վ է այդ աղջիկը, որ ճանաչում է իրեն։

— Բոլորիդ էլ գիտեմ, — ասաց աղջիկը։ — Այ, սա Տիգրանն է, որին Գիտնական են ասում, սա Արտակն է, Գեղեն Արտակը, իսկ ա՛յ, նա Մհերն է իր Քոթոթի հետ։ Տեսնո՞ւմ ես, ճիշտ եմ ասում։ Իսկ թե որտեղի՞ց գիտեմ, ճամփին կիմանաս, հիմի գնանք, ժամանակ չկա...

Աշոտը պատրաստվում էր նոր հարցեր տալ, բայց Գիտնականը ընդհատեց նրան.

— Բոլոր «ինչերը», «ինչուները» և «ինչպեսները» կպարզենք թռիչքի ընթացքում։

Աշոտը համաձայնեց։ Ճիշտ է, նա «Լուսին — 1» տիեզերանավի կապիտանն էր, բայց այլ պետերի պես կամակոր ու իրասածի չէր. մեկ-մեկ լսում էր նաև ուրիշներին։

— Պատրաստվել թռիչքի,— հրամայեց նա։

— Լսում եմ՝ պատրաստվել թռիչքի։

Ամեն ինչ կատարվեց տիեզերական արագությամբ։ Գիտնականն ու Արտակը աճպարարի ճարպկությամբ անհետացան նավի ներսում, նրանց հետևեց անծանոթ աղջիկը, որ նման էր Խաթուն տատիկի Սեդային, բայց Սեդան չէր, Մհերն էլ էր պատրաստվում ներս ծլկել իր անբաժանելի Քոթոթի հետ, երբ Աշոտը տնկվեց նրա առաջ։

— Ո՞ւր։

Դռնակի մեջ երևաց Արտակի գլուխը։

— Թող նստի։

— Ա՜յդ էր պակաս։

Արտակի կողքին հայտնվեց Գիտնականի գլուխը։

— Թող նստի։

Աշոտը գլուխը տարուբերեց բացասաբար։

Դռնակի մեջ երևաց աղջկա գլուխը։

— Թող նստեն։ Խնդրում եմ։ Ախր նա ու Քոթոթը գտան ինձ։

Մհերը տագնապով նայում էր Աշոտին, իսկ Քոթոթը՝ հեչ, կանգնած տիրոջ կողքին, պոչն էր խաղացնում ու շրթունքները լիզում։

Լավ, նստեք, վերջապես համաձայնեց Աշոտը, և երբ Մհերը, Քոթոթին գրկած, անցնում էր նրա մոտով, մատը թափ տվեց նրա քթի առաջ.

— Միայն տե՛ս հա՜...

Բայց դա արդեն նրա բարկության վերջին, անվնաս պոռթկումն էր. Մհերը հասկացավ, որ ամենավատը մնաց հետևում, և հանգիստ շունչ առավ։

«Լուսին — 1» տիեզերանավը պոկվեց տեղից ու մխրճվեց երկնքի կապույտի մեջ։ Նա թռչում էր ոչ թե դեպի Լուսին, այլ դեպի բոլորովին անծանոթ մի աշխարհ, ուր մեր հերոսներին սպասում էին ծանր փորձություններ ու արտասովոր արկածներ։

(Շարունակելի)



# ԱՐԵՎԱԾԱԳ

ԼԵՎՈՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Առավոտ է վաղ.
Դաշտում մեր խաղաղ,
Փոքրիկ զանգակը
Խնդության հակինթ
Արցունքը աչքին՝
Դիմավորում է արևածագը։
Կակաչը կարմիր
Թերթերն է բացել,
Փոքրիկ ու սիրուն
Դրոշ է դարձել։
Նայեցեք հապա
Արևածաղկին.
Նա սպասում է՝
Թե երբ կծագի,
Իշողա դաշտում
Արևն հայրենի,
Որ պատվո պահակ
Ողջ օրը կանգնի։



50 ՏԱՐԻ







# «ԽԵՂՃ» ՄԱՐԴԸ

*ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ*

Փոքրամարմին մարդ էր, նիհար, միշտ նույն շորերով և միայն իրեն հատուկ շտապ, մանր քայլվածքով: Մենք՝ երեխաներս, գիտեինք, որ նա առավոտը փոստ պիտի գնա և ետ գա՝ թերթերի կապոցը թևի տակ: Գիտեինք նաև, որ մենակ է ապրում, կին, երեխաներ չունի: Նա այնքան էր անցել ու դարձել նույն փողոցով, փողոցի նույն տեղով, որ բնակիչները կարող էին նույնիսկ ցույց տալ նրա ոտքերի թողած հետքերն անգամ: Տարիների սովորությունը բնավորություն էր դարձել այդ մարդու համար և նա երբեք չխախտեց իր այդ սովորությունը: Ինչ-որ ժամանակ ուսուցիչ էր եղել, ռուսաց լեզվի ուսուցիչ թագավորական դպրոցում: Թագավորի անկումից հետո, երբ թագավորական դպրոցն էլ փակվեց, թողեց ուսուցչությունը: Այդ օրվանից նա քաշվեց իր տունը և այլևս ոչ ոքի հետ ոչ մի առընչություն չունեցավ:

— Ինչո՞ւ երեխաներ չունի: Ինչո՞ւ մարդամեջ չի գալիս, ոչ ոքի հետ չի խոսում: Ինչո՞ւ է այդքան մռայլ, ժամ էլ չի գնում, աղոթք էլ չի անում:— Տարիներ շարունակ այդպիսի հարցեր էին տալիս իրար համագյուղացիները, և մեկը չկար, որ պատասխաներ այդ հարցերին: Սիմոն վարժապետը մի քանի անգամ փորձել էր ինչ-որ բաներ իմանալ, բայց չէր հաջողվել:

— Գրքեր, թերթեր շատ է կարդում,— ասում էր նրա հարևանը, միակ մարդը, որ ազատ ելումուտ ուներ նրա տունը,— գլուխը թերթերից չի բարձրացնում,— էլ ուրիշ ոչինչ չէր ասում հարևանը:

— Դրանից բան չես հասկանա,— ասում էին գյուղացիները և սպասում, որ մի օր էլ ամեն ինչ պարզվի:

Բայց տարիներն անցնում էին և ոչինչ էլ չէր պարզվում: Եվ մի օր էլ հանկարծ իմացան, որ թագավորական դպրոցի ուսուցիչը գնացել է գյուղից:

— Բոլորովի՞ն,— հարցնում էին հարևանին:

— Հա, բոլորովին,— պատասխանում էր նա:

— Էլ չի՞ գալու:

— Չէ,— ասում էր հարևանը,— էլ չի գալու:

Որպես վերջաբան այդ անհասկանալի պատմության, գյուղացի հարևանը մի մեծ կողպեք դրեց նրա տան դռանը և պատուհանը փակեց խաչաձևած զույգ տախտակներով: Ես այն ժամանակ փոքր էի, իմ հիշողության մեջ մնաց այդ պատուհանը և սև ու մեծ կողպեքը, որ այնպես չարագուշակ տեսք տվեց թագավորական դպրոցի ռուսաց լեզվի ուսուցչի տանը:

Մեր գյուղը լեռնային գյուղ էր՝ մարդիկ թեթևոտըն էին և արագախոս: Հաճախ էին լինում քաղաքում և նրանցից ամեն մեկը մի ճիշտ կամ սուտ լուր էր բերում հետը: Լուրերը մեծանում, պատմություններ էին դառնում, զանազան երանգ ու ձևեր ստանում: Քանի՜ անգամ գյուղացիները նրան «բանտ նետեցին ու փախցրեցին»: Քանի՜-քանի՜ քաջություններ ու անսպասելի համարձակություններ վերագրեցին նրան: Այնքան զանազան ու տարօրինակ էին այդ բոլորը, որ որոշ մարդիկ նույնիսկ ասում էին, թե նա ապրում է ձորերում, ահաբեկում է հարուստներին ու իշխանության ներկայացուցիչներին: Տասը մի անգամ այգուց տուն եկավ լեղուն կպած, խեղճ պառավը կապտել էր վախից: Ներս ընկավ:

— Մեր այգումն է եղել: Մեր այգումն է եղել,— կրկնում էր նա և, երբ փոքր-ինչ հանգստացավ, ասաց. Նամակ է թողել,— և մի թղթի կտոր դրեց սեղանին:

Թղթի վրա իսկապես որ գրված էր. «Եկա խոտդ խորոմեցի, քիշմիշդ կերա, թողի գնացի»: Այս լուրը ամպրոպի նման պայթեց գյուղի վրա: Մի երկու տարի շարունակ մեր գյուղն զբաղված էր «փախստական վարժապետով»: Բայց մեր ընտանիքին վիճակված չէր երկար մնալ այդ գյուղում: Այնպես պատահեց, որ հայրս տեղափոխվեց Երևան և մեզ էլ հետը տարավ: Եվ այստեղ, այս մեծ քաղաքում, ոչ-ոք նրան չէր ճանաչում:

Մենք մի բարի ու նուրբ զգացմունքների տեր ծանոթ ունեինք: Շատ մեղմ ու քնքուշ մարդ էր: Նա սիրում էր իր նման «անմարմին» ոտանավորներ և շատ լավ էր արտասանում: Նա չէր սիրում, երբ ես պատմում էի «փախստական վարժապետի» մասին, պատմում էի պատանեկան հափշտակությամբ, հնարում, պատմում և այնքան էի շատա-

պում, որ շունչս կտրվում, բառերս խառնվում էին իրար և ես ստիպված էի լինում նույն բանը մի քանի անգամ կրկնել: Բայց նա ինձ կանգնեցնում, ասում էր, որ այդ բոլորը հիմարություններ են, որ չարժե դրանց վրա ուշադրություն դարձնել: Ինձ թվում էր, թե նա պարզապես վախենում էր վարժապետից: Ինձ դուր էր գալիս նրա վախկոտությունը, և ես ավելի էի խտացնում գույները, ավելի սարսափելի ու ահավոր դեպքեր էի հնարում: Նա ժպտում էր և պղոթողի ձայնով շշնջում՝

*Իբր այծեմնաց հոյլք ի գարուն*
*Խայտան հայոց կոյսք ի պարուն:*

— Կմեծանաս, կհասկանաս. — ասում էր նա, երբ ես խնդրում էի աշխարհաբար թարգմանել,—միայն թե, որդյակ, մի՛ երթար ճանապարհ ընդ նոսա, գի ոտք նոցա ի չարիս ընթանան:

Ես ծիծաղում էի, զարմանում էի, նույնիսկ ծաղրում էի նրան, բայց ժպտում էր ներողամտորեն, և ինձ դուր չէր գալիս այդ ժպիտը:

— Խեղճ մարդ է, որդի, սիրտը մի՛ կոտրի, — ասում էր մայրս:

«Խեղճ մարդ», — միշտ այսպես է արտահայտվում մայրս նրա մասին խոսելիս: Այս «Խեղճ մարդը» հաճախ էր լինում մեր տանը և ամեն անգամ որևէ բան էր բերում մեզ՝ երեխաներիս համար:

Հայրս նստած էր դաշնակցականների բանտում:

— Բոլշևիկ է, — ասում էր տանտերը, որն ինչպես երևում էր, հայրիկիս չէր սիրում, — կսպանեն, կվերջանա, կգնա:

Այդ օրերին էր, որ իմ աչքում ամեն ինչ փոխվեց, ես մի տեսակ լրջացա և սկսեցի տարբերել մարդկանց: Մինչ այդ, բոլոր մարդիկ ինձ համար միևնույնն էին: Մայրս նկատեց այդ: Նա ամեն երեկո ուղարկում էր ինձ բանտի դուռը.

— Մի տեղ կանգնիր, հեռվից նայիր, որ քեզ չնկատեն: Տես հո հորդ չե՞ն տանում: Հենց որ տեսնես բանտից հանեցին, շուտ տուն հասիր, լուր բեր:

Ես ամեն երեկո բանտի դռանն էի լինում: Մեկ-մեկ էլ եղբորս էի վերցնում հետս: Երբ տուն էի դառնում, մայրս խրախուսում էր ինձ.

— Մեծացիր, մեծացիր, որդիս, ո՞վ գիտե, ինչ է գալու խեղճ հորդ գլխին:

Մեծանում էի: Մայրս ինչ-որ առաջվանը չէր այլևս: Հանկարծ բացակայում էր տնից, թողնում էր մեզ մենակ: Մեր տունն էլ մի տեսակ անիծված տուն էր դարձել, ոչ գալիս էին, ոչ գնում: Մնացինք մենակ, բոլորովին մենակ: «Խեղճ մարդն» էլ աննկատելիորեն չքացել էր, չկար: Մի օր էլ, երբ մայրս ինձ ուղարկեց բանտի դուռը, դեռ տեղ չէի հասել, ինչ-որ տեղից հայտնվեցին հորեղբայրս Արամն ու իր կինը՝ Սաթոն:

— Տուն գնա, — ասաց հորեղբայրս, — գնա մորդ ասա թող հավը մորթի՝ հիմա գալիս ենք:

Ես տուն վազեցի: Մայրս գունատվեց, հուզվեց, հրամայեց չարություն չանել և վերցրեց գլխաշորն ու շտապ դուրս գնաց: Ես նորից վերադարձա բանտի փողոցը: Սև տուֆից կառուցված միհարկանի տան շեմին կանգնած էր Արամ հորեղբայրս, կնոջ՝ Սաթոյի հետ: Ես տեսա, թե ինչպես բացվեցին բանտի դռները: Քիչ հետո ես տեսա հայրիկիս՝ մի խումբ մարդկանց հետ, նրանց բոլորի ձեռքերն էլ կապված էին: Տանում էին: Երբ բավականին մոտ էին, հայրս նկատեց ինձ, ժպտաց, ժպտաց նաև նրա կողքից ընթացող մարդը, և ես նրան ճանաչեցի, ես նրան տեսել էի մեր տանը. Գառնիկ Ղալաչյանն էր, կարծեմ Բաքվից էր եկել:

— Տուն գնա, — հանկարծ լսեցի ականջիս տակ հորեղբայր Արամի ձայնը, նա անցավ իմ կողքից՝ Սաթոյի հետ թևանցուկ:

Սաթոյի մեղմ, գրավիչ աչքերն այս անգամ չոր էին ու կոշտ, այտերի փոսիկները չքացել էին: Նա թողեց ամուսնու թևը, կռացավ, գլուխս շոյեց և ինչ-որ բան դրեց բուռս ու ասաց. «Շուտ հասցրու մորդ»: Ես անմիջապես տուն հասա: Այդ ժամանակ տեսա, որ բերածս թղթադրամ էր՝ մի անկյունը պատռած: Մայրս անշուշտ հասկացավ՝ ազդանշան էր: Նա նորից գնաց:

Ուշ երեկո էր, երբ մայրս տուն վերադարձավ: Նա այնպիսի մի տեսք ուներ, որ դժվար էր որևէ բան հասկանալ: Այդ երեկո նա մեզ ասաց, որ սրանից հետո շատ խելոք պիտի լինենք: Ասաց նաև,



որ եթե տնատերը որևէ բան կհարցնի՝ չպատասխանեմ, երեխաների հետ խաղալիս հայրիկի մասին

դու երբևիցե տեսած կա՞ս վարժապետին:

Ես գլխով արեցի, որ «չէ, չեմ տեսել»:

— Դե հիմա լավ նայիր, լավ նայիր, որ չմոռանաս. — Նա համբուրեց ինձ ու դրեց թախտին: Մի մեծ, կարմիր աստղ նվիրեց ու ասաց. — Ես քեզ համար կոշիկներ կբերեմ, — ասաց, հրաժեշտ տվեց մերոնց և աղմուկով դուրս գնաց:

Ես այլևս նրան չտեսա: Շատ տարիներ հետո, երբ խոսք էր բացվում այդ օրերի մասին, ամենից շատ հիշում էի, «Խեղճ մարդուն»: Հիմա էլ, երբ ես մտաբերում եմ այդ տարիները, առաջին հերթին խոսում եմ այն մարդու մասին, որին մայրս «Խեղճ մարդ» էր անվանում, և երբեմն էլ նայում եմ նրա լուսանկարի մորուքավոր խիստ դեմքին, և զարմանում, այդ ինչպե՞ս էր, որ խստությունն ու նըրբությունը նույն ուժով էին հայտնվում այդ տարօրինակ մարդու մեջ: Ես նրան շատ ուշ ճանաչեցի...

# ԱՅՈԳԱ

(Նանայական ժողովրդական հեքիաթ)

*Սամարների տոհմում ապրում էր Լա անունով մի նանայացի: Նա ուներ մի աղջիկ՝ անունը Այոգա: Սիրուն էր Այոգան: Բոլորը նրան շատ էին սիրում: Մի անգամ, ինչ-որ, մեկը ասել էր, որ Լայի աղջկա նման սիրուն չկա:*

*Այոգան լսելով այդ մասին, հպարտացավ և սկսեց հաճախակի դիտել իր դեմքը: Ինքն իրեն դուր եկավ. նայում էր և չէր կարողանում հայացքը կտրել իրենից: Նայում էր ու չէր հագենում: Մեկ իրեն դիտում էր պղնձյա թասի մեջ, մեկ՝ ջրի մեջ:*

*Այոգան սկսեց ոչինչ չանել: Անընդհատ հրճըվում էր ինքն իրենով: Նա դարձավ ծույլիկ:*

*Մի անգամ մայրը նրան ասաց.*

*— Այոգա, գնա՛ ջուր բեր:*

*Այոգան պատասխանեց.*

*— Ես ջուրը կընկնեմ:*

*— Իսկ դու բռնիր թփից:*

*— Թուփը կպոկվի, — ասաց Այոգան:*

*— Իսկ դու ամուր թփից բռնիր:*

*— Ձեռքերս կչանգռոտվեն...*

*Մայրը Այոգային ասաց.*

*— Իսկ դու ձեռնոցներ հագիր:*

*— Կպատառոտվեն, — ասաց Այոգան:*

*Եվ դարձյալ Այոգան շարունակում էր պղնձե թասի մեջ նայել իրեն և մտքում կրկնել. «Օ՜, ինչքան գեղեցիկ եմ ես»:*

*— Վերցրու ասեղը և կարկատիր ձեռնոցները:*

*— Ասեղը կկոտրվի:*

*— Հաստ ասեղ վերցրու, — ասաց մայրը:*

*— Մատս կծակեմ:*

*— Ամուր կաշվից մատնոց հագիր:*

*— Մատնոցը կճեղքվի, — պատասխանեց Այոգան՝ առանց տեղից շարժվելու:*



*Այստեղ հարևանի աղջիկն ասաց.*

*— Ե՛ս կգնամ ջրի:*

*Աղջիկը գնաց գետը և բերեց այնքան ջուր, ինչքան պետք էր:*

*Մայրը խմոր հունցեց և անուշ բլիթներ թխեց: Այոգան տեսավ բլիթները և բացականչեց.*

*— Մայրի՛կ, ինձ բլիթ տուր:*

դու երբևիցե տեսած կա՞ս վարժապետին:

Ես գլխով արեցի, որ «չէ, չեմ տեսել»:

— Դե հիմա լավ նայիր, լավ նայիր, որ չմոռանաս. — Նա համբուրեց ինձ ու դրեց թախտին: Մի մեծ, կարմիր աստղ նվիրեց ու ասաց. — Ես քեզ համար կոշիկներ կբերեմ, — ասաց, հրաժեշտ տվեց մերոնց և աղմուկով դուրս գնաց:

Ես այլևս նրան չտեսա: Շատ տարիներ հետո, երբ խոսք էր բացվում այդ օրերի մասին, ամենից շատ հիշում էի, «Խեղճ մարդուն»: Հիմա էլ, երբ ես մտաբերում եմ այդ տարիները, առաջին հերթին խոսում եմ այն մարդու մասին, որին մայրս «Խեղճ մարդ» էր անվանում, և երբեմն էլ նայում եմ նրա լուսանկարի մորուքավոր խիստ դեմքին, և զարմանում, այդ ինչպե՞ս էր, որ խստությունն ու նըրբությունը նույն ուժով էին հայտնվում այդ տարօրինակ մարդու մեջ: Ես նրան շատ ուշ ճանաչեցի...

# ԱՅՈԳԱ

(Նանայական ժողովրդական հեքիաթ)

*Սամարների տոհմում ապրում էր Լա անունով մի նանայացի: Նա ուներ մի աղջիկ՝ անունը Այոգա: Սիրուն էր Այոգան: Բոլորը նրան շատ էին սիրում: Մի անգամ, ինչ-որ, մեկը ասել էր, որ Լայի աղջկա նման սիրուն չկա:*

*Այոգան լսելով այդ մասին, հպարտացավ և սկսեց հաճախակի դիտել իր դեմքը: Ինքն իրեն դուր եկավ. նայում էր և չէր կարողանում հայացքը կտրել իրենից: Նայում էր ու չէր հագենում: Մեկ իրեն դիտում էր պղնձյա թասի մեջ, մեկ՝ ջրի մեջ:*

*Այոգան սկսեց ոչինչ չանել: Անընդհատ հրճըվում էր ինքն իրենով: Նա դարձավ ծույլիկ:*

*Մի անգամ մայրը նրան ասաց.*

*— Այոգա, գնա՛ ջուր բեր:*

*Այոգան պատասխանեց.*

*— Ես ջուրը կընկնեմ:*

*— Իսկ դու բռնիր թփից:*

*— Թուփը կպոկվի, — ասաց Այոգան:*

*— Իսկ դու ամուր թփից բռնիր:*

*— Ձեռքերս կչանգռոտվեն...*

*Մայրը Այոգային ասաց.*

*— Իսկ դու ձեռնոցներ հագիր:*

*— Կպատառոտվեն, — ասաց Այոգան:*

*Եվ դարձյալ Այոգան շարունակում էր պղնձե թասի մեջ նայել իրեն և մտքում կրկնել. «Օ՜, ինչքան գեղեցիկ եմ ես»:*

*— Վերցրու ասեղը և կարկատիր ձեռնոցները:*

*— Ասեղը կկոտրվի:*

*— Հաստ ասեղ վերցրու, — ասաց մայրը:*

*— Մատս կծակեմ:*

*— Ամուր կաշվից մատնոց հագիր:*

*— Մատնոցը կճեղքվի, — պատասխանեց Այոգան՝ առանց տեղից շարժվելու:*



*Այստեղ հարևանի աղջիկն ասաց.*

*— Ե՛ս կգնամ ջրի:*

*Աղջիկը գնաց գետը և բերեց այնքան ջուր, ինչքան պետք էր:*

*Մայրը խմոր հունցեց և անուշ բլիթներ թխեց: Այոգան տեսավ բլիթները և բացականչեց.*

*— Մայրի՛կ, ինձ բլիթ տուր:*



— Տաք է՝ ձեռքերդ կվառես, — պատասխանեց մայրը աղջկան։

— Իսկ ես ձեռնոցներ կհագնեմ, — ասաց Այոգան։

— Ձեռնոցները թաց են։

— Ես արևի տակ կչորացնեմ։

— Նրանք կուչ կգան, — պատասխանեց մայրը։

— Ես կհարդարեմ։

— Ձեռքերդ կցավեն, — ասաց մայրը։ — Ինչո՞ւ չարչարվես, փչացնես գեղեցկությունդ։ Ավելի լավ է, ես բլիթը տամ այն աղջկան, որը չի խնայում իր ձեռքերը։

Եվ մայրը բլիթը տվեց հարևանի աղջկան։



Այոգան վրդովվեց։ Գնաց գետափ և ջրի մեջ երկար նայում էր իրեն։

Իսկ հարևանի աղջիկը ափին նստած՝ ծամում էր բլիթը։

Այոգան սկսեց նայել այդ աղջկան, այնքան նայեց, որ վիզը երկարեց, դարձավ երկա՜ր-երկա՜ր։

Աղջիկը Այոգային ասաց.

— Այոգա, ուզո՞ւմ ես բլիթը քեզ տամ։

Այոգան շատ ջղայնացավ։ Աղջկա վրա թափահարեց ձեռքերը, մատները չռեց, կատաղությունից բոլորովին սպիտակեց. ինքը լինի գեղեցկունի և կծած բլիթ ուտի՞։ Այնքան թափահարեց ձեռքերը, որ դրանք դարձան իսկական թևեր։

— Ինձ ոչինչ պետք չէ, ղա՛, ղա՛, — գոռաց Այոգան։

Եվ չկարողացավ իրեն պահել ափին, թռմփաց ջրի մեջ և դարձավ սագ։

Լողում էր և գոռում.

— Ինչքա՜ն գեղեցիկ եմ ես, ղա՛, ղա՛, ղա՛։ Օ՜, ինչքան գեղեցիկ եմ ես...



Լողաց, լողաց, մինչև մոռացավ նանայերեն խոսելը։ Բոլոր բառերը մոռացավ։

Միայն իր անունը չմոռացավ, որպեսզի ոչ մեկի հետ իրեն չշփոթեն, և հենց որ մարդ էր տեսնում, սկսում էր ձայն տալ.

— Այ-ոգա-ղա, ղա՛, Այ-ոգա-ղա, ղա՛։

*Ռուսերենից թարգմ. Մ. ԿԱՖՅԱՆԸ*

ՎԻԿՏՈՐ ԿՈԶԵՎՍԿԻ

# ԸՆԿՈՒՅԶԻ ԳՆԱՑԻՆՔ

*(Փոխադրություն)*

Պարկերն առած գնացինք մենք,
Որ անտառից ընկույզ բերենք...
Եվ ի՜նչ տեսանք.
Ընկուզենու ամեն մի շիվ
Ընկույզներ է բռնել անթիվ,
Իսկ եռանդուն սկյուռները,
Որ կուշտ մնան ողջ ձմեռը,
Հավաքում են արագ-արագ
Թաթիկներով նուրբ ու բարակ,
Տանում լցնում պահեստն իրենց,
Որ նույն ծառի փչակն է մեծ։
Հետո ելնում են փչակից,
Մի պահ կանգնում պոչերը ցից;
Այս ու այն կողմ խլշկոտում,
Տեսնեն, թե ով կա մոտերքում։
Նայում են ցած, նայում են վեր,
Տեսնեն արդյոք անհրավեր
Չի՞ հայտնվել տհաճ, անդուր
Եվ աչքածակ մի անկոչ հյուր,
Որ փչակից ընկույզն հանի,
Լցնի տոպրակն ու տուն տանի։
Երկար-երկար այսպես կանգնած
Նայում էինք մենք հիացած.
Մեկ էլ տեսանք արևը մեծ,
Ինչպես ոսկե հսկա ընկույզ,
Լեռան գլխից ցած գլորվեց
Քաշեց, տարավ շողերն իր լույս։
Ծառ բարձրացանք մենք տագնապած,
Ճկուն ճյուղը քաշեցինք մեզ,
Եվ պարկերը ընկույզ լցրած
Ներքև թռանք անմիջապես։
Իսկ հետո, երբ մութը կոխեց,
Մենք պարկերը շալակեցինք
Ու քայլերով արագ ու մեծ
Ուրախ, զվարթ տուն գնացինք։

# ԱՆԿՈՉ ՀՅՈՒՐԸ

Աշնան անձրևը՝
Հորդ ու աներես,
Բոստանը եկավ
Անկոչ հյուրի պես։

— Բարի աջողում,—
Ասաց նա հնչեղ,—
Ջմերուկ տուր ինձ,
Տուր ինձ նաև սեխ։

— Անհամար է իմ
Բերքը և առատ,
Բայց ես քեզ, անձրև,
Չեմ տա ոչ մի հատ։

Չէ՞ որ, ա՛յ անպետք,
Զուններ դու աշխօր.
Ո՞ւր էիր կորել
Արդյոք մինչ այսօր։.

Որտե՞ղ էիր դու
Թափվում մշտապես,
Երբ փոքրիկ էի
Եվ թույլ էի ես։

Ինչո՞ւ թմբերիս
Այնքան պապակված,
Դու ողջ ամառը
Չթափվեցիր ցած։

Դու չթրջեցիր
Քո շիթով թեթև,
Արևից այրված
Իմ շուրթերը սև։

Ուշ ես դու հիշել
Ջմերուկ ու սեխ,
Նրանք հասել են
Արդեն ամեն տեղ։

Բիստրիցա գետից
Ինձ ջուր են բերել,
Ծարավ թփերս
Ոռոգել, ջրել։

Երբ մարդն իր ձեռքը
Թփիս է զարնում,
Ջրերը իմ մեջ
Մեղըր են դառնում։

Եվ պտուղներս,
Քաղցրությամբ լցված,
Ես նվիրում եմ
Հոգատար մարդկանց։

*Թարգմ. Գ. ՎԻՐԱՊՅԱՆԸ*



*Օրերս ավարտվեց չեխոսլովակյան կուլտուրայի տասնօրյակը Հայաստանում: Տասնօրյակի մասնակիցները մեր արվեստասեր ժողովրդին ներկայացրին չեխոսլովակյան դասական արվեստը, ժողովրդական ստեղծագործությունը, էստրադային ու պարային արվեստը.*



# Ոսկե Պրագա, գեղեցկուհի Բրատիսլավա...

Ոսկե Պրագա են ասում. ասում են նաև Հարյուրաշտարակ Պրագա: Եվ իրոք, երբ բարձրանում ես Պետրժինի բլուրի վրա ու նայում ցած, ուր տարածվում է քաղաքը, առաջին հերթին պարմացնում է երկինք միրճված աշտարակների բազմությունը: Ավելի քան չորս հարյուր աշտարակ կա Պրագայում, իսկ այդ աշտարակներից յուրաքանչյուրը կարդարում է ճարտարապետական մի հոյակապ կոթող:

Պրագա մտնողն առաջին հերթին ուշադրություն է դարձնում Կրեմլի վրա, որն իր տաճարների գոթական աշտարակներով կարծես կախված լինի երկնքից: Կրեմլի դիրքը այնպիսին է, որ երևում է քաղաքի բոլոր կողմերից: Ժամանակին հենց միայն Կրեմլը, կամ ինչպես չեխերն են ասում՝ Գրադը և մեկ էլ քաղաքի մյուս ծայրում նույնպես բարձր բլուրի վրա գտնվող Վիշեգրադն է եղել: Հետագայում նրանց միջև սկսել է գոյանալ այժմյան սքանչելի քաղաքը: Կրեմլի բլրի վրա դեռևս վեցերորդ դարում ամրոց է եղել, իսկ իններորդ դարում սկսվում է կառուցվել Պրագայի առաջին տաճարը: Հետագայում կառուց-



Պրագա, Կրեմլ

վում են ուրիշ տաճարներ ու շինություններ: Կառուցվում է նաև թագավորական պալատը և աստիճանաբար Պրագայի Կրեմլը դառնում է Եվրոպայի աչքի ընկնող ճարտարապետական հուշարձաններից մեկը: Այժմ ամեն օր հազարավոր տուրիստներ են այցելում Կրեմլ, դիտում նրա տեսարժան վայրերը, ճարտարապետական կոթողները: Առանձնապես աչքի է ընկնում ս. Վիտայի տաճարը, որը հիմնադրվել է 1344 թվականին և գոթական ճարտարապետության փայլուն նմուշներից է համարվում:

Պրագայի Կրեմլի աչքի ընկնող տաճարներից մեկն է ս. Լորետայի տաճարը, ուր այժմ հավաքված են թանգարանային մեծ արժեք ներկայացնող կանացի իրեր ու ցուցանմուշներ: Լորետայի տաճարի կանգակատանը տեղավորված 27 կանգերը յուրաքանչյուր ժամը մեկ մի գեղեցիկ մեղեդի են նվագում:

Լորետայի հրապարակից ոչ հեռու գտնվում է նախկին Ստրոգովյան վանքը, ուր այժմ տեղավորված է Ստրոգովյան աշխարհահռչակ գրադարանը, ուր, մեր Մատենադարանի նման, հիմնականում պահվում են հին ձեռագրեր, քարտեզներ, փաստագրություններ և գրքերի առաջին հրատարակություններ:

Սակայն Պրագան միայն իր նշանավոր Կրեմլով չէ, որ հայտնի է: Քաղաքի գրեթե բոլոր թաղամասերը լի են ճարտարապետական ու պատմական հուշարձաններով: Աքանչելի է Վիշեգրադը, ուր հանգչում են չեխ ժողովրդի լավագույն զավակները՝ գրողներն ու նկարիչները, կուլտուրայի այլ գործիչները: Հիանալի են Վլտավա գետի վրայի կամուրջները, իսկ ամենից գեղեցիկն ու արժեքավորը Կառլոսի կամուրջն է, որ կառուցվել է դեռևս 1357 թվականին: Այդ կամուրջը, որը 520 մետր երկարություն ունի, կարծես թանգարան լինի: Նրա աջ ու ձախ կողմերում բազմաթիվ արձաններ ու քանդակախմբեր կան, որոնց վրա մոտ 30 նշանավոր քանդակագործներ են աշխատել և որոնք արվեստի իսկական նմուշներ են հանդիսանում:

Իսկ եթե իջնենք Պրագայի այն թաղամասը, որը կոչվում է Հին քաղաք, մենք կընկնենք միջնադարյան նեղլիկ ու ծուռ, սակայն մաքուր ու հետաքրքիր փողոցների լաբիրինթոսը, որտեղից որքան էլ որ պտտվելու լինենք, դուրս կգանք Ստարոմեստսկայա հրապարակը, ուր վեր են խոյանում Տինի տաճարի և Ռատուշի աշտարակները: Այստեղ է նաև չեխ ժողովրդի հերոսական զավակ Յան Հուսի հոյակապ արձանը:

Ամբողջ աշխարհին է հայտնի վարպետ Հանուշի դեռևս 15-րդ դարում պատրաստած ժամացույցը, որը



*Պրագա, Ազգային թատրոնի շենքը*

մինչև օրս էլ զարմանք է պատճառում մարդկանց: Երբ յուրաքանչյուր ժամի լրանալուն մի քանի րոպե է մնում, այստեղ՝ ժամացույցի տակ հսկայական բազմություն է հավաքվում: Շատերը երկրից երկիր են գալիս Պրագայի նշանավոր ժամացույցի զարկերը լսելու և տեսնելու Հանուշի հրաշագործ մտքի ու ձեռքերի արգասիքը: Երբ ժամացույցը խփում է ճիշտ ժամը, նրա վերևի զույգ պատուհաններում հայտնվում են 12 առաքյալները, իսկ երբ առաքյալները հերթով գալիս ու գնում են, քարե նիշի մեջ գտնվող աքաղաղն սկսում է կանչել: Թվացույցն այնպես է արված, որ ցույց է տալիս երկնային մարմինների շարժումը: Թվացույցի տակ կա նաև օրացույց, որը ցույց է տալիս օրերը, շաբաթներն ու ամիսները:

Սակայն եթե միայն հնությունների հետքերով գնանք, մենք Պրագայի մասին ճիշտ պատկերացում չենք ունենա: Պրագան հայտնի է նաև իր նոր շինություններով, հիասքանչ աշտարակներով և սոցիալիզմի ուղին բռնած երկրի նոր ու հռչակավոր արվեստով:

Եթե հին քաղաքից դուրս գանք ու մտնենք Նոր քաղաքը, անցնենք Վացլավյան հրապարակի մարդա-

շատ մայթերով, կտեսնենք, որ այնտեղ իսկապես տրոփում է նոր կյանքը: Պրագան այսօր գիտության ու կուլտուրայի իսկական կենտրոն է, ինչպես նաև կենտրոն է բարձր արդյունաբերության, որի արտադրանքըն այսօր հայտնի է ամբողջ աշխարհում:

Ոսկե Պրագան մայրաքաղաքն է Չեխոսլովակիայի, որի կազմի մեջ մտնում են Չեխիան և Սլովակիան: Սլովակիայի կենտրոնը Բրատիսլավա քաղաքն է, որի մասին հիշելիս անպայման հիշում են նաև գեղեցկուհի ածականը: Եվ իսկապես, երբ Դանուբի աջ ափից նայելու լինենք Բրատիսլավային, կտեսնենք, որ իզուր չեն ասում Գեղեցկուհի Բրատիսլավա: Գեղեցիկ շինություններն ու աշտարակները, բարձր բլուրի վրա գտնվող Կրեմլը և սովետական պինվորների հիշատակին կառուցված Սլավին հուշարձանը քաղաքին տալիս են կարմանալի գեղեցիկ գծագրություն՝

Բրատիսլավան Սլովակիայի ամենահնագույն քաղաքն է: Շնորհիվ իր հաջող դիրքի, քաղաքը միշտ էլ եղել է ուշադրության կենտրոնում և մեծ դեր է խաղացել սլովակ ժողովրդի պատմության, նրա կուլտուրայի զարգացման մեջ: Քաղաքի Կրեմլը ռոմանական ոճի ամենահնագույն կառուցվածքներից է Եվրոպայում: Այժմ բազմաթիվ զբոսաշրջիկներ են այցելում Բրատիսլավայի Կրեմլը, Դանուբի ափին գտնվող Դեվին ամրոցը, որը ոչ միայն ռազմական նշանակություն ունի, այլև հայտնի է նրանով, որ սլովակ ժողովրդի կուլտուրայի և գրականության ականավոր գործիչ Լյուդովիտ Շտուրի և նրա խմբի հավաքատեղին է եղել: Քաղաքը լի է բազմաթիվ գոթական շինություններով և նորագույն ժամանակի ճարտարապետական հուշարձաններով: Կենտրոնական փողոցներս ու Դանուբի առափնյա փողոցները, այգիներն ու հրապարակները Բրատիսլավայի գեղեցկություններն են: Ամենաբարձրադիր բլուրի վրա վեր է խոյանում սովետական պինվորի հուշարձանը՝ Սլավինը: Այստեղ թաղված են սովետական հայրավոր պինվորներ, որոնք իրենց կյանքը զոհ են բերել Բրատիսլավա քաղաքի ազատագրման համար:

Սլովակ ժողովուրդը չի մոռանա նրանց, ովքեր ընկան իր ազատության ու երջանկության համար: Միաժամանակ կենտրոնում բարձր պատվանդանի վրա կանգնած պինվորը խորհրդանշում է սովետական և սլովակ ժողովրդի մեծ ու խորը բարեկամությունը:

*Տեսարան Բրատիսլավայից*



## Չեխական ժողովրդական երգեր

# ՀՈՒՆՁԸ

Խոտ էր հնձում ծեր շլդիկը,
Ջահել աղվեսն հավաքում,
Խոտը սայլն էր բարձում ճանճը,
Իսկ մոծակը նվագում։

Ամպեց օրը, անձրև եկավ,
Հավաքեցին խոտն արագ,
Ու քարշ տալով բարձած սայլը,
Հասան ծանոթ մի մարագ։

Բղավում էր ճանճը սայլից.
— Ձե՜մ բարձրանա կտուրը,
Կընկնեմ, ոտքս կջարդվի,
Էլ չեմ հասնի մեր դուռը։

# ԿԱՃԱՌՈՒՄ ՀՈՊՈՊԸ

Մարին ծառից թռավ՝ հո՛պ.
Բռնեց սիրուն մի հոպոպ,
Հոպոպը թե՝ զում-զում-զում,
Ձեր տանն ապրել չեմ ուզում,
Ես կվազեմ տատի մոտ,
Պանիր կտա ինձ յուղոտ։



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ՇՈՒՐՋՊԱՐԸ

Փոքրիկ այծիկն ունի պոզեր,
Պետք է պոզահարի,
Աղջիկն ունի սիրուն ոտքեր,
Պետք է ուրախ պարի։

Պոզեր ունի. մենք այծիկին
Բաց կթողնենք սարը,
Իսկ աղջկան կառնենք տանենք
Ուրախ մեր շուրջպարը։

*Փոխադրեց ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆԸ*

# ՎԱՐԴԵՐԻ ՄԱՐԳԱԳԵՏԻՆԸ

(Հինավուրց զրույց)

ԱԼՈԻՍ ԻՐԱՍԵԿ

Մի խուլ տեղում, ալեկոծվող արտերի միջև, որոնց հետևում սևին են տալիս սոճու դալար անտառները, թաքնված է մի փոքրիկ մարգագետին, քսան քայլից ոչ ավելի երկարությամբ և տասնհինգ քայլ լայնությամբ։ Նրա եզրերին աճում են կարմիր ու փարթամ վարդերի ցածրիկ թփուտներ։ Նրանք արտասովոր վարդեր են։ Շրջակայքում՝ ոչ մի տեղ այդպիսի վարդեր չեք գտնի։ Ուրիշ հողի վրա դրանք չեն աճում։ Փորձել են տեղափոխել՝ չեն կպել, փորձել են ոչնչացնել, արմատահան անել՝ նույն տարին նորից են կանաչել։ Փարթամ շիվեր են տարածել և ձգվել դեպի մարգագետնի կենտրոնը։

Մեր բարեպաշտ նախնիների վշտով սրբագործված այդ անդորր անկյունը կոչվում է Վարդերի մարգագետին և ընկած է մի բարձունքի վրա, որտեղից մինչև Մորաշից գյուղը մի ժամվա ճանապարհ է. ճանապարհն անցնում է Լիտոմիշլից դեպի արևմուտք։

Այստեղից բացվում է շրջակայքի հիասքանչ տեսարանը։ Հեռվում, դալար անտառներով շրջապատված, խոյանում է Մակովյան աշտարակը, տեղ-տեղ անտառակների մեջ սպիտակին են տալիս գյուղերը, բայց մի շատ զմայլելի տեսարան է բացվում, երբ նայում ես դեպի արևելք. Ջեխական Տրշեբով բարձունքներին, անտառապատ բլուրներին ու սքանչելի ճարտարապետական կոթող Լիտոմիշլի բարձր ամրոցին։

Այստեղ, չորս հարյուր տարի սրանից առաջ, երբ դեռ կանգնած էր հին ամրոցը, ապրում էին պոստուպցի պաներ Կոստկիները՝ չեխական եղբայրների* հավատարիմ պաշտպանները։ Այդ ամրոցի մոտակա քաղաքում մի տուն կար, որտեղ եղբայրները աղոթքի էին հավաքվում։ Քաղաքացիների մեծ մասը պատկանում էր եղբայրների համայնքին։

Երբ Ֆերդինանդ առաջինը, հաղթահարելով չեխական դասերի դիմադրությունը, պոստուպցի պան Կոստկայից խլեց Լոտոմիշլյան ամրոցը, քաղաքի և շրջակայքի եղբայրները ստիպված եղան լքել հայրենիքը։ Հենց այդ ժամանակ բռնըվեց չեխական եղբայրների համայնքի ավագ Յան Ավգուստը։ Գյուղացու շորեր հագած, նա թաքնըվում էր Լիտոմիշլի շրջակայքում, բայց մի անգամ ինքն իրեն մատնեց՝ մոռացավ, որ գեղջուկի շորեր ունի հագին ու, ինչպես պատմում են, թևի տակից դուրս քաշեց կարմիր մետաքսե գործվածքը, որ ճակատի քրտինքը սրբի։ Այդ ժամանակ արքայական հետման Շեյնոգի (նա դեռ Լիտոմիշլյան ամրոցի կառավարիչն էր) մարդիկ նկատեցին, բռնեցին Ավգուստին և տարան Լիտոմիշլ, որտեղից և, եղբոր՝ գրագիր Վիլկոմի հետ միասին, ուղարկեցին Կրժիվոկլատ ամրոցը։

Այնտեղ դաժան բանտարկության մեջ տասնչորս տարուց ավելի տանջվեցին նրանք։

Շատ տարիներ հետո, Ֆեոդինանդի որդի Մաքսիմիլան թագավորի ժամանակ, վրա հասան ավելի ազատ ժամանակներ։ Եղբայրները վերադարձան աքսորից և նորից բնակություն հաստատեցին Լիտոմիշլում և նրա շրջակայքում։

Բայց նրանք երկար չվայելեցին ազատությունը։ 1618 թվականին ահեղ փոթորիկ սկսվեց։ Ծանր վիշտ իջավ չեխական հողի վրա. կրոնական պատերազմները հաջորդեցին մեկը մյուսին և Բելագորյան ճակատամարտից հետո վրա հասան դաժան ժամանակներ։ Ով կաթոլիկ չէր կամ իր հավատը չէր ուրանում՝ մատնվում էր հալածանքի։ Նույն այդ ճակատագիրը բաժին ընկավ Լիտոմիշլի և նրա շրջակայքի չեխական եղբայրներին, բայց հայրենիքը թողնելուց առաջ նրանք համաձայնության եկան, որ էլի մի անգամ հավաքվեն աստվածպաշտության կարգ կատարելու (բացեիբաց աղոթել նրանք այլևս չէին կարող) և հրաժեշտ տալու հայրենի երկրին։ Այդ հանդիպման տեղը նրանք ընտրել էին Մորաշիցի հետևի անտառում գտնվող մարգագետինը։

Խուսափելով վտանգից՝ նրանք հավաքվեցին մութ գիշերով և լուռ ու թավուտ կեչիների անտառում, աստղազարդ երկնակամարի տակ և վերջին անգամ աղոթեցին։ Իսկ հետո հրաժեշտ տվին հայրենիքին։ Նրանցից շատերը որպես հիշատակ իրենց հետ մի-մի բուռ հող վերցրին. շատերը համբուրեցին հողը՝ թրջելով այն արտասուքի շիթերով։

Եվ արցունքներով ցողված հողի վրա, ի վկայություն հայրենիքի հանդեպ ունեցած նրանց հավատարմության ու սիրո, դուրս եկան կարմիր վարդեր։

Տարիներ անցան, և մարդիկ մոռացան եղբայրների մասին, բայց այն տեղը, որտեղ նրանք հը-

* Հոգևոր միաբանություն

րաժեշտ էին տվել իրենց հայրենիքին, երկար ժամանակ հարգված մնաց: Հին ժամանակ մարգագետինն ավելի մեծ էր, իսկ նրա շրջակա անտառները՝ ավելի թավ ու խիտ: Հիմա թավուտ անտառների տեղը կանաչին են տալիս դալար փոքրիկ անտառներ ու լայնատարած դաշտեր: Մարգագետինը վարեցին բոլոր կողմերից և նրանից մնաց մի փոքր կտոր, բայց դա էլ էին ուզում վարել ու ցանել, քանի որ շրջակայքում ամենուրեք արտեր էին փռված: Արտերի միջև ընկած մարգագետինը կարծես բոլորի աչքի փուշն էր դարձել, բայց եկավ և նրա ժամանակը:

Կարծես ինքը նախախնամությունն էր պաշտպանում այդ կտորը: Այստեղ պատահեց այն, ինչ Ժիժկայի դաշտում՝ Պրիշիբիսլավի մոտ: Հենց որ սկսեցին մարգագետինը վարել՝ կամ գութանն էր ջարդվում, կամ ձին էր ընկնում: Ի վերջո այնտեղ վուշ ցանեցին: Վուշը աճեց ու հասունացավ, պոկեցին վուշը, թրջեցին, չորացրին և արդեն սկսել էին գզել, երբ հանկարծ վուշը բռնկվեց ու նրա բոցերից չորանոցը վառվեց: Այնուհետև վառվեց չորանոցի տիրոջ ընդարձակ կալվածքը և այդ հրդեհին զոհ գնաց նաև նրա երիտասարդ աղջիկը:

Այդ ժամանակից ի վեր վարդերի մարգագետինը ոչ ոք չի հանդգնում վարել:



Շպալա ԾԱՂԻԿՆԵՐ

1813 թվականին, Նապոլեոնին հետապնդելու ժամանակ, այդ մարգագետինով անցան ռուսները: Նրանք հարցուփորձ արին տեղական բնակիչներին վարդերի մարգագետնի մասին և, լսելով ամբողջ պատմությունը, ձիերից իջան ու ծնկի եկան մարգագետնի առաջ:

Այդ մարգագետնի մասին կա հնամենի մի նախագուշակում, որն ասում է՝ կգա ժամանակ, որ այնտեղ ճակատամարտ կլինի, այնպիսի ահեղ ճակատամարտ, որ արյունը հեղեղի պես կհոսի, իսկ հետո այնտեղ կհավաքվեն յոթ թագավորներ և հավիտենական խաղաղություն կկնքեն: Այդ բոլորը տեղի կունենա այստեղ, վարդերի մեջ, որտեղ չեխական եղբայրները՝ պատերազմի և արյունահեղության թշնամիները, հրաժեշտ տվին իրենց հայրենիքին:

Ծաղկում են մարգագետնում վարդերը, շուրջը մեղմորեն ալեկոծվում ու սոսափում են հուզախռով հասկերը, սպիտակին տալիս թիթեռնիկները: Խաղաղ ու բերկրալի է այստեղ... Եվ ակամայից կհիշես քո նախնիներին, կմտաբերես, թե ինչ կսկիծ է ճմլել նրանց սիրտը հայրենիքին հրաժեշտ տալու դառնագին պահին, երբ իրենց արցունքներով թրջել են հայրենի հողը: Եվ այդ ժամանակ ավելի լավ կհասկանաս չեխ հալածյալների սրտառուչ երգի տողերը՝

Ներիր, չեխական իմ երկիր,
Ցավով եմ հեռանում քեզնից:

Եվ հայացքիդ առջևով կանցնեն անբախտ հալածյալների շարքերը... Կանգ են առնում նրանք իրենց վշտալի ճանապարհին և արցունքով լեցուն աչքերով նայում են ետ՝ սիրելի, օրհնված այն երկրին, որ «նրանց տունն ու հայրենիքն էր»:








*Չեխոսլովակյան սոցիալիստական հանրապետության պիոներական կազմակերպությունը ծնունդ է առել 1949 թ. ապրիլին:*

*Այժմ Չեխոսլովակիայի պիոներների թիվը անցնում է մեկ միլիոնից:*

*Ի հավերժացումն ժողովրդական հերոս Յուլիուս Ֆուչիկի հիշատակի, Չեխոսլովակիայում սահմանված է խաղաղության մրցանակ, որը տրվում է ամեն տարի սեպտեմբերի 8-ին, Ֆուչիկի մահապատժի օրը:*

*Այդ բարձր պատվին է արժանացել նաև պիոներների մեծաթիվ բանակը:*



*Չեխ պիոներներն իրենց օգտակար գործերով ու խրախուսելի նախաձեռնություններով իրավունք են նվաճել նշանավոր գիտնականների, գրողների, բանվորների և արվեստի աշխատողների հետ միասին լինել խաղաղության համար պայքարողների միության շարքում:*

**1942**

*Թվականի ապրիլի 24-ին գերմանական ֆաշիստները ձերբակալեցին Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի անդամ Յուլիուս Ֆուչիկին: Պանկրացի գեստապոյական բանտում, որտեղ նա անցկացրեց մեկ տարուց ավելի, Յու. Ֆուչիկը գրեց իր հուշերը, որոնք առանձին թերթիկներով դուրս էին բերվում բանտի խցիկից: Այդ հուշերում նա գրել է իր և իր ընկերների կյանքի վերջին օրերի, ինչպես նաև չեխ հայրենասերների հերոսական պայքարի մասին:*

*Տպագրում ենք հատվածներ Յու. Ֆուչիկի օրագրից:*

Կամերայի դուռը բացվում է, և անաղմուկ, ասես ոտքի մատների ծայրերի վրա, ներս է վազում մի գամփռ, կանգնում է իմ սնարի մոտ և դարձյալ անթարթ նայում ինձ:

Կողքիս՝ նորից երկու զույգ երկարաճիտ կոշիկներ: Հիմա ես գիտեմ արդեն, թե ինչ մարդիկ են դրանք. մի զույգը պատկանում է Պանկրացի բանտային հսկիչին, մյուսը՝ II—A—I բաժնի պետին, որը հարցաքննում էր ինձ այն գիշերը: Ահա և մի կերպարանք, քաղաքացիական անդրավարտիքով: Հայացքս սահում է վեր, անդրավարտիքի վրայով, այո, ճանաչում եմ նրան, դա այն երկար ու բարակ գեստապոյականն է, որը ղեկավարում էր իմ ձերբակալությունը:

Պետը նստում է աթոռին և սկսում է հարցաքննությունը.

— Դու տանուլ տվիր խաղդ, մտածիր գոնե քո մասին: Խոսիր:

Նա ծխախոտ է առաջարկում ինձ: Չեմ ուզում:

— Որքա՞ն ժամանակ ապրեցիր Բակսերի մոտ:

Բակսերի մո՞տ: Գնալով գործը լրջանում է: Ո՞վ է ասել նրանց:

— Տեսնո՞ւմ ես, մեզ ամեն բան հայտնի է: Խոսիր:

— Եթե ձեզ ամեն բան հայտնի է, էլ ի՞նչ խոսեմ ես: Պատվով եմ ապրել մինչև այժմ և ուզում եմ պատվով մնալ մինչև վերջը:

Հարցաքննությունը տևում է մի ժամ: Հարցաքննողը չի գոռում, նա համբերությամբ կրկնում է միևնույն հարցը, հետո, պատասխանի չսպասելով տալիս է երկրորդը, երրորդը, տասներորդը:

— Մի՞թե դու չես հասկանում: Ամեն ինչ վերջացած է, դուք տանուլ եք տվել: Դուք բոլորդ:

— Միայն ես եմ տանուլ տվել:

— Դու դեռ հավատո՞ւմ ես կոմունայի հաղթանակին:

— Իհարկե:

## Խոսք Ճակա



Ձուկ *(պլաստիլինից)*



Նապաստակ *(խմորից)*

— Նա դեռ հավատո՞ւմ է,— հարցնում է բաժնի վարիչը գերմաներեն, իսկ գեստապոյականը թարգմանում է.— ...նա դեռ հավատում է Ռուսաստանի հաղթանակին:

— Իհարկե, ուրիշ ելք չի կարող լինել:

Ես հոգնեցի: Բոլոր ուժերս լարել էի կգաստ և արթուն լինելու համար, և այժմ գիտակցությունը լքում է ինձ, ինչպես խորունկ վերքից հոսող արյունը: Ի վերջո ես էլի տեսնում եմ, ինչպես ձեռքը մեկնում է ինձ. բանտապահները պետք է որ մահվան կնիքը տեսած լինեն դեմքիս վրա: Իսկապես, մի քանի երկրներում դահիճները սովորություն են ունեցել մահապատժից առաջ համբուրել դատապարտյալին:

Երեկո է:

Երկու մարդ ձեռքերը ծալած քայլում են շուրջանակի և ծոր տալով, աններդաշնակ երգում են մի տըխուր եղանակ.

Երբ խավարում է աչքերի լույսը
Եվ հոգին թողնում մարմինը մեղապարտ...



Է՜յ, մարդիկ, թողեք վերջապես: Գուցե այդ երգը վատ էլ չէ, բայց այսօր... այսօր Մայիսի մեկի նախօրյակն է, աշխարհի ամենագեղեցիկ, ամենապվարթ տոնի նախօրյակը: Փորձում եմ երգել մի ուրախ բան, բայց, երևում է, դա ավելի մռայլ է հնչում, որովհետև Կարելը երեսը շուռ է տալիս, իսկ «հայրիկը» սրբում է աչքերը: Վնաս չունի, ես անձնատուր չեմ լինում և շարունակում եմ երգել, մինչև որ նրանք միանում են ինձ: Բավարարված, ես ննջում եմ:

Մայիսմեկյան առավոտ: Լուսաբաց: Բանտային աշտարակի ժամացույցը խփում է երեքը: Առաջին անգամ ես պարզ լսում եմ ժամացույցի կարկերը: Առաջին անգամ ձերբակալությունից հետո ես լրիվ գիտակցում եմ ամեն ինչ: Ես զգում եմ, ինչպես բաց լուսամուտից թեթև քամին մտնում է ներս, փչում ներքնակիս վրա, դարմանի ծղոտները ծակոտում են կուրծքս և փորս: Մարմնիս յուրաքանչյուր բջիջը ցավում է հազար տարբեր ձևով: Դժվար է շնչել: Հանկարծ, ասես լայն բացվեց մի պատուհան, իմ մեջ փայլեց մի միտք. սա վերջն է, ես մեռնում եմ:

Ո՞ւր էիր այսքան ժամանակ, մա՛հ, չէիր գալիս: Իսկ ես, խոստովանում եմ, հույս ունեի, որ քեզ կհանդիպեմ շատ տարիներ հետո, որ ես դեռ կապրեմ ազատ կյանքով, կաշխատեմ շատ, կսիրեմ շատ և կերգեմ շատ և կթափառեմ աշխարհում: Չէ՞ որ ես միայն այժմ եմ դարձել հասուն, այնքան շա՜տ էին իմ ուժերը: Էլ չկան նրանք: Վերջ:

Ես սիրում էի կյանքը և պայքարի մտա նրա համար: Ես սիրում էի ձեզ, մարդիկ, և երջանիկ էի, երբ դուք պատասխանում էիք ինձ նույն զգացումով, և տառապում էի, երբ դուք չէիք հասկանում ինձ: Ում վշտացրել եմ, ներեցեք, ում ուրախացրել եմ, մի՛ մոռանաք: Թող իմ անունը ոչ ոքի տխրություն չբերի: Սա իմ ավանդն է ձեզ, հայր, մայր և քույրեր, քեզ, իմ Գուստա, ձեզ, ընկերներ, բոլորին, ում հետ ես ինձ լավ եմ զգացել: Եթե արցունքները կօգնեն ձեզ, լացեք: Բայց մի՛ խղճաք: Ես ապրեցի հանուն հրճվալից կյանքի, մեռնում եմ նրա համար, և անարդար կլիներ գերեզմանիս՛ վրա կանգնեցնել տխրության հրեշտակը:



Մայիսի մեկը: Այդ ժամին մենք արդեն հավաքվում էինք քաղաքների ծայրամասերում և ծածանում մեր դրոշները: Այդ ժամին Մոսկվայի փողոցներում արդեն քայլում են մայիսյան կո՛րահանդեսի գնացող կորքի առաջին շարքերը: Եվ միլիոնավոր մարդիկ հիմա վերջին մարտն են մղում հանուն մարդկության ազատության: Հազարներ կընկնեն այդ մարտում: Ես նրանցից մեկն եմ: Սքանչելի է լինել վերջին ճակատամարտի ռազմիկներից մեկը:

Բայց մահացումը ամենևին սքանչելի չէ: Շունչս կտրվում է: Օդ չկա: Սեփական կոկորդում լսում եմ խռխռոց և կլթկլթոց: Հանկարծ չարթնացնե՜մ ընկերներին: Կոկորդս թրջեի գոնե մի կում ջրով, բայց ջրամանը դատարկ է իսպառ: Ինձնից վեց քայլ հեռու ունիտազում, կամերայի անկյունում, ջուր կա: Բայց կունենա՞մ այդքան ուժ հասնելու մինչև այնտեղ:

Սողում եմ փորիս վրա, կամաց, կզույշ, ասես մահվան մեջ գլխավորը ոչ ոքի չարթնացնելն է: Հասա: Խմում եմ շնչակտուր: Չգիտեմ, որքան տևեց այդ, ինչքան ժամանակ ես ետ սողացի: Ուշքս նորից կորցնում եմ: Փնտրում եմ զարկերակս և չեմ գտնում: Սիրտս բարձրացավ դեպի կոկորդս և սրընթաց վայր ընկավ: Ես էլ եմ ընկնում...

Մի բան եմ խնդրում ձեզ, դուք, որ կապրեք այս ժամանակներից հետո: Չմոռանաք: Չմոռանաք ոչ բարիներին, ոչ չարերին: Համբերությամբ հավաքեցեք վկայություններ նրանց մասին, ովքեր ընկան իրենց համար և ձեզ համար: Կգա օրը, երբ ներկան կդառնա անցյալ, երբ կխոսեն մեծ ժամանակի և պատմությունը կերտող անանուն հերոսների մասին: Հիշեցեք: Անանուն հերոսներ չեն եղել: Եղել են մարդիկ, ամեն մեկն ունեցել է իր անունը, իր կերպարանքը, իր տենչերը և հույսերը, և նրանցից ամենից աննկատելիի տանջանքները նվազ չեն եղել, քան այն մարդու տանջանքները, որի անունը կմտնի պատմության մեջ: Թող ուրեմն մարտում ընկածները մոտիկ լինեն ձեզ, ինչպես բարեկամներ, ինչպես հարազատներ, ինչպես դուք ինքներդ:

Հազարավոր հերոսներ ընկան: Սիրեցեք գոնե նրանցից մեկին, ինչպես հարազատ որդու, հարազատ աղջկա, հպարտացեք նրանով, ինչպես մի մեծ մարդով, որն ապրում էր ապագայով: Ամեն մեկը, ով հավատարիմ է եղել ապագային և մեռել է նրա համար, որպեսզի նա գեղեցիկ լինի, արժանի՛ է հուշարձանի: Իսկ նա, ով կամենում էր անցյալի փոշուց պատնեշ կառուցել և կանգնեցնել հեղափոխության հեղեղը, նա լոկ պաճուճապատանք է, շինված փտած փայտից: Ինչ փույթ, թե նրա ուսերին ոսկեհյուս տրեզներ են եղել: Բայց այդ պաճուճապատանքները ևս պետք է լավ կննել իրենց ողորմելի ոչնչության մեջ, իրենց ամբողջ անկոր դաժանության մեջ, և նրանք առարկա կդառնան ապագա խոհերի:

Վճռված և ստորագրված է: Իմ գործի հետաքննությունը վերջացավ...

Քննիչն այնքան կոռեկտ է և սառը, որ նրա տեսքը միայն սարսուռ է ազդում: Համազգեստի թևածալերի վրայի խոշոր վահանիկները սվաստիկայի նշանով ազդարարում են գոյություն չունեցող համոզմունքների մասին... Մեղադրյալի հետ նա ո՛չ բարի է, ո՛չ չար, ո՛չ կծծծաղի, ո՛չ կխոժոռի: Նա պաշտոնյա է: Նրա երակներում արյուն չի հոսում, այլ ինչ-որ ջրալի ապուր:

Թղթերը կարեցին, ստորագրեցին, ամեն ինչ դրին պարագրաֆների տակ: Վեց անգամ պետական դավաճանություն, դավադրություն Գերմանական կայսրության դեմ, զինված ապստամբության պատրաստություն և էլի չգիտես ինչ: Ամեն մի կետն առանձին վերցրած բավական էր լինելի:

Տասներեք ամիս ես պայքարեցի իմ կյանքի և ընկերներիս կյանքի համար: Ե՛վ հանդգնությամբ, և՛ խորամանկությամբ: Իմ թշնամիները իրենց ծրագրում

գրել են «նորդիկական խորամանկություն»: Բայց ես չընկա այդ ծուղակը: Իմ խաղը տանուլ է տրված միայն այն պատճառով, որ նրանք բացի խորամանկությունից, իրենց ձեռքում ունեն նաև կացին:

Ուրեմն, վերջ մենամարտին: Այժմ մնում է սպասել: Երկու-երեք շաբաթ կանցնի, մինչև կազմեն մեղադրական ակտը, հետո ինձ կտանեն Գերմանիա, դատարան, դատավճիռ, իսկ այնուհետև մահապատիժ: Այս է հեռանկարը: Ուրեմն պահեստի ունեմ չորս կամ գուցե հինգ ամիս: Այդ ժամանակամիջոցում կարող է շատ բան փոխվել: Կարող է փոխվել ամեն բան: Կարող է... ճաղերի միջով դատել դժվար է: Բայց բանտի պատերից դուրս հանգույցի լուծման արագացումը կարող է արագացնել և մեր վախճանը: Ո՞վ գիտե:

Եվ վազում է հույսը պատերազմի ետևից: Մահը մրցում է մահվան հետ: Ո՞րն ավելի շուտ, ֆաշիզմի՞ մահը, թե՞ իմ մահը: Միայն իմ առաջ չէ, որ կանգնում է այդ հարցը: Այդ հարցը տալիս են տասնյակ հազարավոր կալանավորներ, միլիոնավոր զինվորներ, տասնյակ միլիոնավոր մարդիկ Եվրոպայում և ողջ աշխարհում: Մեկի հույսը շատ է, մյուսինը՝ քիչ: Բայց այդ միայն թվում է: Քայքայվող կապիտալիզմը սարսափներով լցրել է աշխարհը, և այդ սարսափները մահացու աղետ են սպառնում յուրաքանչյուրին: Հարյուր հազարավոր մարդիկ (և ինչպիսի՜ մարդիկ) կընկնեն, նախքան կենդանի մնացածները կկարողանան ասել՝ մենք տեսանք ֆաշիզմի մահը:

Հասել են վճռական ամիսները, շուտով կգան նաև վճռական օրերը: Դրանք կլինեն առանձնապես դաժան գոտեմարտի օրեր: Մի անգամ չէ, որ մտածել եմ, ինչքան ցավալի է լինել պատերազմի վերջին կռիվը, այն զինվորը, որին սպանում է վերջին ակնթարթում վերջին գնդակը: Բայց մեկն ու մեկը պետք է որ լինի վերջինը: Եվ եթե ես գիտենայի, որ ինձնից հետո այլևս կռիվներ չեն լինի, առանց մի րոպե դանդաղելու ուրախությամբ կգնայի դեպի մահը:



*Ֆուչիկի անվան այգին և ս. Բարդուղիմեոսի տաճարը*

Յարոսլավ Հաշեկի «Քաջ զինվոր Շվեյկի արկածները» հուշակավոր գրքի նկարազարդումներից



















ՖՐԱՆՏԻՇԵԿ ՀՐՈՒԲԻՆ

## ՀԱՆԵԼՈՒԿ



Քամին ամպերը ցրեց,
Մի ամպ-գլխարկ թռցրեց.
Եվ անգլխարկ մի եղջյուր
Շողշողալով ընկավ ջուր...
Եվ ջրերում պաղպաջուն
Նա խայտում է, ճաճանչում...
Այդ ծկնիկին ոսկեշող
Ոչ ոք բռնել չի կարող։

*(Լուսնեղջյուրը)*



## ՄԱՅՐԻԿԸ ԼՎԱՆՈՒՄ Է

Ճղփում է տաշտը բոլորշի,
Տունը լցվել է գոլորշի։
Քույրիկը տուն եկավ լալով՝
Ցեխոտ հագուստը ցույց տալով։
Հիմա նստել, խաղ չի անում,
Մայրիկը շորն է լվանում։
Ճղփում է տաշտը բոլորշի,
Տունը լցվել է գոլորշի։

## ԲԼՐԱԿՆ Ի ՎԱՐ

Գլորվում ենք բլրակն ի վար,
Ձյուների մեջ հրում իրար։
Հայրիկներն էլ, մեզ պես, մի օր
Վար են սահել գլտոր-գլտոր։

Պապիկներն էլ իրար քաշել,
Սղղացել են, շորեր մաշել,
Քրթմնջացող տատիկներն էլ
Նրանց շորերն են կարկատել։

## ՓԱԽՈՒՍՏ ՋՐԻՑ

— Պետի՛կ, Պետի՛կ,
Այդ ո՞ր բակից...
— Ես փախչում եմ
Այն լճակից։

Ծածան ձուկը
Ասաց. «Ջուրը
Մաքրում է քո
Կեղտն ու մուրը»։

*Ռուսերենից թարգմ.*
ՎԱՂԱՐՇԱԿ ՆՈՐԵՆՑԸ



## ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐ ՃՆՃՂՈՒԿԸ

Սկսված է դասը վաղուց...
Ծիտը տեսնում է ապակուց,
Որ մի աղջիկ փոքրիկ քարով
Սև տախտակն է նախշում գրով։
— Ջիրիկ, չիկ-չիկ, չիրիկ, չիկ-չիկ,
Ի՞նչ ես գրում, պստլիկ աղջիկ.
Ջիրիկ, չիկ-չիկ, չիրիկ, չիկ-չիկ,
Եվ ինչո՞վ ես գրում, աղջիկ...
— Ճստիկ ճնճղուկ, տե՛ս, կավիճո՛վ...
— Ծի՛վ, կավիճո՛վ, կավճե գրչո՛վ.
Ի՞նչ է գրում չարաճճին։—
Կավճե գրչով, չիկ-չիկ, չիկ-չիկ,
Դաս է գրում մի լավ աղջիկ։






ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Մեծ դաշտի վրա էր Եղեգնուտը, մեծ գետի կամրջի ականջին։

Թողեց հեռացավ դաշտից Եղեգնուտը, բարձրացավ բարձր լեռները, ուր անտառներ կային խոնավ և արծվաբույն ժայռեր՝ անտեր քամիներին ապաստան խոռոչներով։

Դաշտում մի ծուխ երկու չէր դառնում։ Կորչում էին դաշտի գյուղերի ծխերը։ Մերթ ելնում էր մեծ գետը մրափած տեղից, ահռելի ողողում, սրբում կալն ու արտ, մերթ բարակում, կորչում եղեգնուտի ավազների մեջ։ Եվ մնում էր դաշտը, խանձվում հողը, և խորշակի թույնը այրում էր ծառ ու գառ, չծլած հունդ ու ծիլ մանուկներ։

Մեծ գետից անդին մրափած մեծ անապատից զանգված առ զանգված եկող ամպ էր բռնում արևի երեսը՝ աշխարհ խժռող մարախ...

Բայց խորշակից ու մարախից առավել ահ ու մահով ձիերի սմբակների դոփյունն ու պողպատի կրճտոց էր գալիս մեծ գետից անդին մրափած մեծ անապատից։ Ձիու ձանր սմբակ էր գալիս, ոչխարի ավերիչ կճղակ, ատամ՝ ուղտի, ու անապատաբնակ կիսավայրենի մարդու և ձին, նիզակների անտառ և փոշի՝ երկինքը մթագնող թոզ-դուման։

Եվ մի դալուկ-դաժան աշնան օր էլ, երբ նորից թոզ-դուման ելավ հեռավոր հեռվում ու ձիերի վրնջոցից տափաստանը սարսռաց, Եղեգնուտը տեղահան եղավ...

Պոկվեց մահվան երախից Եղեգնուտը։ Թողեց հեռացավ դաշտից, բարձրացավ բարձր լեռները, ուր անտառներ կային խոնավ, արծվաբույն ժայռեր, ուր ոչ արջն էր վախենում մարդուց, ոչ մարդը՝ արջից։ Իրար տեսած չէին։

Անտեր քամիների հանգրվան ժայռի խոռոչներում, քամու բերնին ապաստանեց եղեգնուտցի հողվորը և պատրաստվեց մենամարտի՝ անտառի անծանոթ ոգիների ու ժայռերի բարեղեն կարծրության դեմ։

Ժայռի ճեղքում ճյուղ ու ոստից բունիկ հյուսեց եղեգնուտցի այրին զույգ զավակի համար։

Անծանոթ էին լեռնալանջերին պպզած թփերը՝ հազար չար ու շառով, հազարերախ մռնչացող անտառը՝ ծոցում վայրի տխիլ ու տանձ, մոռ ու մոշ և էլի ուրիշ պտուղներ, որ եղեգնուտցիք չէին տեսել իրենց հեռավոր դաշտում։

— Ե՛լ, Մախի՛,— պատանի որդուն պատվեր տվեց մայրը։ — Ե՛լ, փորձիր անտառի ու թփերի պտուղները և ուտելին ջոկիր ոչ ուտելիից։ Ուտելին բեր քրոջդ համար և ձմռան պաշար։

Դաշտի հողի պես խանձված երեսներ ուներ պատանի Մախին և դաշտի հողի պես հանդարտ բնույթ ու հայացք։

Ելավ Մախին, ինքն առաջինը մտավ ժայռերի ուսերին զանգուրված դեղին-միրգ թփուտները։ Արջի օրինակով սև մոշ պոկեց փշոտ ճյուղից ու կերավ, լիացավ։ Ապա ճաշակեց խազալի վրա մեկնված հոնի կաթուկը և նորից ճաշակեց։ Փորձեց վայրի տանձը և մորը փորձեց ու լիացավ կրկին։

— Է՜հե՜յ, — ձայն տվեց նա, ու նրա ձայնը հազար փշուր դարձավ քարանձավների խոնավ խոռոչներում։ — Եկե՛ք, պաշար եմ գտել բոլորիդ։ Եկե՛ք...

Եվ նայեց ոսկեղենիկ ոտներով, թանձր-վարդ տերևներով, կարմիր գինդ-փունջ պտուղներով պճնված թփին, որ նազում էր, հրապուրում քաղցր հմայքներով։ Փայլատակող, բոցող էին նրա պտուղները՝ դաշտի նռան հատիկներ։ Ոչ մրջյուն-բզեզն էր աղարտել նրա պտուղը, ոչ հավքը կտցել։ Թեթև ճերմակ-ալյուր փոշի էր նստած ոսկեղենիկ թփի ոտներին, որ մաղվում էր խամրած խոտերին, և փուշ չունեին ողկույզ-ողկույզ կախված նրա պտուղները։

Մախին պոկեց ոսկեղենիկ մի ոստ, այրուրոտ մատները տարավ բերանին:

Անուշ էր թփի այրուր փոշին:

Մի քանի պտուղ լցրեց բերանը և քաղցրությունից խենթացավ:

Կերավ, նորից կերավ:

Սիրտն սկսեց կտրատվել: Աղիքները ոլորվեցին կծիկ-կծիկ: Լեզուն լեղի դարձավ, աչքերը մշուշվեցին ուռչելով:

Իսկ քարանձավի խոռոչներից բարձրանում էին մարդիկ՝ Մախու կանչին, Մախու գտած պտուղներով լիանալու:

Սիրտը խառնում էր, լեզուն ճոթռվում: Աչքերի մեջ պղտորվել էր աշնանային արևի լույսը:

Ճիգ արեց, ուռած լեղի լեզուն պտտեց բերանում:

— Թույն է էս ոսկեղենիկ թուփը, մարդի՜կ: Մահն են դրա գինդ-կլոր պտուղները: Էս թուփն իմն է, մարդի՜կ, իմ մահը: Հեռու կացեք էս թփի մահից, հեռո՜ւ...

Բոց տվին, վառեցին ոսկեղենիկ թուփը: Ճարճատեցին ոսկեղենիկ ոստերը, և նրա բոցը հանգավ Մախու սառած աչքերի մեջ:

Հետո նման մեկ ուրիշ թուփ էլ գտան ու այրեցին: Հետո՝ երրորդը, չորրորդը:

Եղեգնուտն ապրեց՝ ոսկեղենիկ թփերի հետ կռիվ կրակով:

Հիմա էլ կա Եղեգնուտը:

Աշնան լի օրերին, երբեմն, հեռավոր մի ժայռի ճեղքից, իր դեղին ոստերով, թանձր-կարմիր տերևներով ու գինդ-կլոր պտուղներով հրապուրիչ ժպտում է Մախուն մահ տված թուփը: Եղեգնուտցի մեկը նկատելով այն, գոռում է տագնապով.

— Է՜, հե՜յ, հրե՜ն, Մախու մահ-թուփը երևաց, կրակ բերեք:

Ոսկեղենիկ բոց է ելնում ժայռի ճեղքից: Թվում է՝ այդպես այրվում է այն հեռավոր ժամանակներում ապրած պատանի Մախին:

Այրվում է, որ ուրիշները չայրվեն:



# ՀԱՑՈՒԿԸ



Ա. ՊՈՏՅՈՄԿԻՆԱ

Մայրիկը բարկացավ Միտյայի վրա: Նա հեռացրեց նրան սեղանի մոտից և անկյուն կանգնեցրեց.

— Կպառկես քնելու առանց ընթրիքի: Իսկ առայժմ կանգնիր անկյունում և մտածիր, թե ինչի համար ես պատժվում:

Միտյան վիրավորվեց.

— Մեծ բան է, էլի, մի կտոր հաց եմ շպրտել:

... Հանկարծ նա տեսավ, որ մոտենում է մի ծերուկ: Նա այնքան ծեր էր, որ անգամ մորուքն էլ էր դեղնել, իսկ գլուխն այնպես ողորկ էր ու շագանակագույն, ինչպես լավ թխած հացի կողեկը:

Միտյան քիչ մնաց վախենար: Սակայն ծերուկը նրան հանգստացրեց.

— Մի՛ վախենա, ես Հացուկն եմ, ամենաբարին քո ճանաչածների մեջ: Մայրիկդ ճիշտ է ասում. ինձ հարգել է պետք:

Միտյան համարձակություն ստացավ.

— Պա՜հ: Հրթիռներ պատրաստելն ավելի դժվար է, քան հաց թխելը:

— Տեսնում ես, ինչ գրագե՜տն է,— ծաղրեց Հացուկը:— Կուզենայի տեսնել, թե դու մենակ ինչպես կարող ես քեզ համար մի կտոր հաց պատրաստել:

Միտյան քմծիծաղ տվեց, քրքրեց գրպանները, այնտեղից հանեց կոպեկանոցը և ասաց.

— Գնանք, ես քեզ ցույց կտամ, թե որտեղից կարելի է հաց ճարել:

Եվ ծերուկին տարավ հացի խանութ: Բայց տարօրինակ բան. հենց որ նրանք խանութ մտան, հացերը վեր թռան իրենց տեղերից և անհայտացան: Միտյան կարմացավ: Իսկ Հացուկը քնքշորեն հարցրեց.

— Դու չե՞ս ուզում իմանալ, թե ուր թռան-գնացին հացերը:

— Ուզում եմ,— խոստովանեց Միտյան,— բայց ափսոս, որ ուղղաթիռ չունենք:

— Ոչինչ, առանց դրա էլ յոլա կգնանք,— ասաց Հացուկը:

Ծերուկը փչեց իր մորուքին, որը փքվեց, տարածվեց, ինչպես գորգ-ինքնաթիռ: Միտյան հարմար տե-



դավորվեց մորուքի վրա, ու նրանք թռան հացերի հետևից:

Թռան-թռան և հասան հացի գործարան: Սակայն բոքոններն ու յուղահացերը, բուլկիներն ու օղահացերը, որ նրանցից առաջ էին ընկել, նախ թեքվեցին դեպի իրենց տեղերը, ապա մտան փռի մեջ: Կոնվեյերն սկսեց աշխատել հակառակ ուղղությամբ, հացամթերքները մեքենայի միջով անցան և, խմոր դարձած, լցվեցին տաշտերի մեջ:



— Այստեղ ոչ մի դժվարություն չկա,— ասաց Միտյան,— ես հեռուստացույցով տեսել եմ: Պետք է մեքենաներն աշխատեցնել հակառակ ուղղությամբ:

— Դե աշխատեցրու,— ասաց Հացուկը:

— Կմեծանամ, կսովորեմ, ինժեներ կդառնամ և կաշխատեցնեմ:

— Մինչ այդ, փոքրիկ, դու դեռ շատ հաց պետք է ուտես: Գուցե ինքդ կարողանաս թխել, ինչպես հնում էին անում: Փորձիր:

Եվ Միտյայի աչքի առաջ հացի գործարանն սկսեց փոքրանալ... Իսկ տաշտերում ոչ թե մեքենաները, այլ մարդիկ էին խմորը շաղախում, թիակներով հացը մտցնում փուռը: Ապա փռից հանում էին փքված, կարմրատակած հացը...

— Ես էլ կարող եմ թխել,— վստահ ասաց Միտյան:

Նա թևերը քշտեց և մոտեցավ տաշտին: Բայց խմորը թափվում էր նրա ձեռքերից, դառնում ալյուր, լցվում պարկերը, իսկ ջուրը լցվում էր դույլերը: Խմորիչը, շաքարն ու աղը դասավորվում էին իրենց տեղերը:

Միտյան կարմանքից անգամ բերանը բաց արեց:

— Պատրաստի խմորից հաց թխելը այնքան էլ դըժվար բան չէ,— ասաց Հացուկը,— փորձիր ինքդ հունցել:

— Այդտեղ ոչ մի դժվար բան չկա,— վրա բերեց Միտյան:

Նա վերցրեց գոգաթիակը և ուզեց պարկից ալյուր հանել: Իսկ պարկն սկսեց ցատկոտել և... պատուհանից դուրս թռավ:

Այստեղ Միտյան առաջին անգամ շփոթվեց: Նա նայեց Հացուկին և կարմանքով նկատեց, որ նրա մորուքն այդ միջոցին երկու անգամ ավելի էր կարճացել: Իսկ ծերուկը կարծես փոքր-ինչ երիտասարդացել էր. ճաղատ գլխի վրա մազեր էին երևում:

— Ի՞նչ անենք հիմա,— անհանգստացավ Միտյան:— Էլի թռչենք:

— Կփորձենք,— ասաց Հացուկը,—նստիր մեջքիս:

Նրանք թռան, և այն էլ այնպես արագ, որ հասան ալյուրին: Գետափին վայրէջք կատարեցին, որտեղ մի ջրաղաց կար: Այդ միջոցին հասավ ալյուրով լի պարկը և լցվեց աղացաքարերի վրա: Ամեն ինչ պտտվեց հակառակ ուղղությամբ, և աղացաքարերի տակից դուրս թափվեց ցորենը: Հացուկը պարկը մոտեցրեց, և այն լցվեց ցորենով:

Միտյան բոլորովին իրեն կորցրեց.

— Էլ ինչպե՞ս ցորենից հաց թխեմ:

— Աղալ է պետք:

Միտյան նայեց շուրջը, բայց ոչ ջրաղացը կար, ոչ էլ ցորենով լի պարկը. ամենուրեք փռված էր տարեկանի դաշտը:

Նայեց Միտյան Հացուկին և կարմանքից քար կտրեց: Նրա առջև կանգնած էր ոչ թե ծերուկը, այլ

մի երիտասարդ գյուղացի: Մորուքը չկար, իսկ գլխին գանգուրներ կային...

Հնձեց Հացուկը, հասկերը պառկեցին շարքով, ապա հավաքեց մանգաղով և խուրձեր կապեց:

— Իսկ հիմա դու փորձիր,— դիմեց նա Միտյային:

Փորձեց Միտյան, չկարողացավ պոկել, ուժը չպատեց: Փորձեց մանգաղով, մատը կտրեց: Նա բոլորովին կորցրեց իրեն: Նստեց գետնին, սկսեց մատից արյունը ծծել: Ու երբ գլուխը բարձրացրեց, կողքին ոչ ոք չկար: Տարեկանի դաշտն էլ չկար: Միայն մի հասկ էր օրորվում խոտերի մեջ: Եվ այդ հասկը ասաց.



— Ահա հենց այսպիսին էի ես, երբ մարդիկ տեսան ինձ, և միայն այսպես էլ կարող եմ քո ձեռքն ընկնել:

— Բայց արդյո՞ք մի հասկից հաց կթխվի,— աղերսեց Միտյան,— ծիծաղում ես դու ինձ վրա:

— Բոլորովին,— ասաց հասկը:— Մարդիկ մտածեցին և հնարը գտան: Դու էլ մտածիր:

Միտյան սկսեց մտածել, բայց ոչ մի հնար չկարողացավ գտնել: Հասկից հատիկներ հանեց և սկսեց ծամել. ուտել էր ուզում:

Հատիկները նրան այնպես դառը թվացին, որ աչքերից արցունքներ կաթեցին: Եվ նա հիշեց իրենց տունը, իր մայրիկին:

— Ես երբեք այլևս հացը չեմ շպրտի,— բարձր ասաց նա,— երդվում եմ: Հացուկ, ո՞ւր ես դու:

Իսկ հասկը պատասխանեց.

— Խոսքը գործով է ամուր: Քեզանից հազարավոր տարիներ առաջ մարդիկ մտածեցին ու գլխի ընկան, թե ինչպես հասկից հաց թխեն: Պետք է քաղել հասկը և տրորել ափի մեջ:

Միտյան անմիջապես քաղեց հասկը և սկսեց տրորել: Հասկից հատիկներ դուրս եկան: Միտյան բոլորը հավաքեց և շարեց իր կողքին: Եվ, ա՜յ քեզ հրաշք: Գետնի տակից դուրս եկավ մի մարդ, որ շատ նման էր հասկին: Դա Հացուկն էր, սակայն շատ փոքրիկ: Նա վերցրեց մի փայտիկ և սկսեց հողը փորել:

Նրանք հողը փորեցին, հատիկները ցանեցին և սկսեցին սպասել: Ահա հողի միջից երևացին ծիլերը, նմանվեցին խոտի, ապա երևան եկան հասկավոր ցողունները, հասկերը լցվեցին հատիկներով...

Սակայն այժմ Միտյայի ու Հացուկի մոտ՝ ոչ մանգաղ կար, ոչ գերանդի: Նրանք ձեռքով հավաքեցին հասկերը, ձեռքով դրանցից հատիկներ հանեցին: Հացուկը Միտյային ցույց տվեց, թե ինչպես կարելի է ցորենն աղալ երկու քարերի արանքում տրորելով: Հացուկը կրակ արեց, քարերը այդ կրակի վրա տաքացրեց: Իսկ Միտյան ալյուրը ջրով շաղախեց և այդ քարերի վրա բլիթ թխեց...

— Այ, հիմա,— ասաց Հացուկը,— դու ինքդ քեզ համար մի կտոր հաց պատրաստեցիր:

— Տուն տար ինձ,— խնդրեց Միտյան:

— Ի՞նչ կա որ, կտանեմ,— համաձայնեց Հացուկը,— միայն ստիպված կլինենք քայլել դարերի վրայով:

Գնացին, գնացին նրանք, տեսան, թե ինչպես են մարդիկ հողը բրիչով մշակում, ինչպես են արորով վարում, տեսան ձիերը լծած գութաններ և առաջին շոգեաղացները... Ճանապարհները լայնացան, անտառները ետ քաշվեցին: Իսկ Հացուկը մեծացավ, ծերացավ, ծերացավ... Եվ դարձավ նույն ծերուկը, ինչպիսին Միտյան տեսավ նրան առաջին անգամ: Ահա եկան նրանք մի ընդարձակ արտ, որի եզրերը չէին երևում: Այդ արտի միջով գնում էր կոմբայնը, իսկ նրա հետևից՝ ավտոմեքենաները: Դրանք ցորենը տանում էին հացի գործարան: Իսկ այնտեղից հացը խանութ էին ուղարկում:

— Դե, այժմ դու ինքդ կարող ես տան ճանապարհը գտնել,— ասաց Հացուկը:

Եվ անհայտացավ, կարծես իսկի չէր էլ եղել: Իսկ Միտյան մտավ խանութ, գրպանից հանեց մետաղադրամը և գնեց մի մեծ կտոր հաց: Հացից այնպիսի



անուշ բուրմունք էր գալիս, որ Միտյան դրանից արթնացավ: Աչքերը բաց արեց և կարմացավ. պառկած էր իր անկողնում, իսկ մայրը սեղանի մոտ կանգնած թարմ հաց էր կտրատում.

— Վեր կաց, տղաս: Նախաճաշի ժամանակ է...

*Թարգմանեց Ս. ԳԱՍՊԱՐՅԱՆԸ*

# ԱՂՋԻԿԸ ՀՈՒԶՎԱԾ ԷՐ...

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Գայանեն ուշանում էր։

Մայրը բաց արեց պատուհանը։

Գարու՞ն է...

Պատուհանի տակ բարձրացող միակ բարդին կորել էր մի քանի օրում առաջ ներխուժած ճնճղուկների ուրախ ծլվլոցներ արձակող խմբի թևերի տակ։

Երգում էին ճնճղուկները։

Նրանց ձայնը ձուլվում էր դպրոցից վերադարձող երեխաների ուրախ աղմուկին։

Գարու՞ն է...

Ողջ ¬ նությունը, կենդանություն առած, համբուրվում է արևի հետ։

Առաջին ծիլն է գլուխն հողից դուրս հանում...

Մայրը, բաց պատուհանի գոգին կռթնած, շարունակում էր նայել դպրոցից վերադարձող երեխաներին։

Գայանեն ուշանում էր... Ինչո՞ւ է նա ամենից ուշ դուրս գալիս...

Որքա՞ն արագ են անցնում գարունները, այն ե՞րբ էր, որ ինքն էլ էր վերադառնում դպրոցից... Գայանեն տասներեք տարեկան է արդեն...

— Մայրի՛կ։

Մայրը շրջվեց, նա այնքան էր տարվել մտքերով, որ անցնող խմբի մեջ չէր նկատել Գայանեին։

Մայրն անսովոր ցավ զգաց սրտում, սեևուն հայացքով զննեց աղջկան, բայց, չգիտես ինչու, չհարցրեց ուշանալու պատճառը։

Գայանեն տխուր էր։

Մայրը մոտեցավ, ձեռքը դրեց դստեր ուսին և մտերմաբար ասաց.

— Երևում է, այսօր աղջիկս «երկու» է բերել...

— Ո՛չ, մայրիկ։

— Ուսուցիչները բարկացել են դասի ժամանակ խոսելու համար։

— Ո՛չ, մայրիկ։ — Պատասխանեց աղջիկն ու մտածեց. «Երանի այդպես լիներ»։

Գայանեն ուզում էր ամեն ինչ մոռանալ, ճանապարհին նա հազար անգամ մտքում կրկնել էր՝ ջհանդա՞մը... բայց, ինչպես երևում է, ինքը չափազանց թույլ կամք ունի, ինչո՞ւ չկարողացավ թաքցնել, ինչո՞ւ մայրիկն զգաց...

Մայրը սեղանի վրա ուտելիքներ շարեց։

Նրանք նստեցին դեմուդեմ։

Գայանեն ուտում էր առանց ախորժակի։

Մայրը դիտում էր։ Նա սպասում էր, որ աղջիկն ինքը սկսի, ի՞նչ էր պատահել, ի՞նչ...

Գայանեն լուռ էր։ Նրա աչքի առջևից չէին հեռանում ընկերների զարմացած հայացքները, որոնք ասեղի նման ծակում էին սիրտը։

Նա սկսում էր կարմրել, երբ հիշում էր Հովիկին, բայց իսկույն հավաքում էր իրեն՝ դիմացը նստած մոր հայացքից խուսափելով։

Հանկարծ պատառաքաղը ձեռքից վայր ընկավ, նա հազիվ կարողացավ կուլ տալ վերջին պատառը, նրա աչքերից արցունքի կաթիլներ սկսեցին հոսել։

— Գայանե՞... — անհանգստացած ոտքի ելավ մայրը։

Գայանեն գլուխը դրեց սեղանին։

Մայրը քնքշանքով շոյեց աղջկա գլուխը։

— Դե, ասա տեսնեմ, ի՞նչ է պատահել...

Գայանեն շարունակում էր լռել։

— Մի՞թե կարելի է մայրիկից որևէ բան թաքցնել... Դա նշանակում է չվստահել նրան...

Աղջիկը բարձրացրեց գլուխը։

Մայր ու աղջիկ նայեցին իրար։ Գայանեն Արցունքների միջից տեսնում էր մոր սիրալիր, պայծառ ու ջերմ հայացքը. որքա՜ն քնքշանք կար նրա աչքերում....

— Գիտես ինչ, մա՛...

— Չգիտեմ...

— Դա, դա բոլորովին էլ գաղտնի չի, ամբողջ դասարանի առաջ...



Գայանեն նորից պատրաստվում էր լաց լինել, մայրը հանգստացրեց։

— Թույլ դա քեզ համար ծիծաղելի լինի,— փոքր-ինչ հանգստանալուց հետո սկսեց Գայանեն։

— Ինչո՞ւ ես այդպես կարծում...

— Չէ՛, ինչպես ասեմ, մեծերը երբեմն չեն...

Մայրը կտրեց նրա խոսքը.

— Իզուր ես կարծում, Գայանե, միշտ չի, որ մեծերը չեն հասկանում ձեզ. երբեմն ձեզ թվում է, որ մենք՝ մեծերս...

Մայրը նույնպես կիսատ թողեց միտքը։ Նրանք մի պահ լուռ նայում էին իրար։ Մայրը շարունակեց.

— Ես այնքա՜ն եմ երազել աղջիկ ունենալու մասին, այժմ նա կա... Ես հիմա էլ

չեմ դադարել երազելուց, այժմ էլ երազում եմ, որ իմ աղջիկը շա՜տ-շա՜տ լավը լինի... Եվ այնքան մոտ լինի ինձ հետ, որ բաց անի սիրտը ինձ, ինչպես, ասենք, իր ամենամոտ ընկերուհուն...

Մոր հանգիստ ձայնը, սիրալիր ու մեղմ տոնը, իսկույն փոխեցին աղջկա տրամադրությունը։ Նա մի տեսակ աշխուժացավ ու անմիջապես ասաց.

— Այսօր ընկեր Աշխենը մեր դասարանի աշակերտներից մի քանիսի տեղերը ցանկացավ փոխել։ Բոլորին՝ ում առաջարկեց վեր կենալ տեղից, անմիջապես հնազանդվեցին։ Ապա՝ դարձավ նա Հովիկին ու ասաց.

— Իսկ դու, Սանթրոսյան, այսուհետև կնստես Գայանեի կողքին...

Հովիկը ոտքի կանգնեց ու ասաց.

— Ես նրա կողքին չեմ նստի...

Ամբողջ դասարանը զարմացած ինձ նայեց։

Իսկ ես ամոթից կախեցի գլուխս։

Մայրը շարունակում էր նայել աղջկան ու հիանալ. որքա՜ն գեղեցիկ էր նա, պարզ ու թափանցիկ...

Նա նայում էր Գայանեին ու հիշում նրա խոսքերը Հովիկի մասին. «Մայրիկ, մեր դասարանի ամենալավ տղան նա է»։

— Մայրիկ, ամբողջ դասարանի առաջ...

— Գիտես ինչ, Գայանե, տղաները մի փոքր բծախնդիր են այդ հարցերում, ասենք, այսպես՝ նրանցից ոմանք երբեմն չեն ցանկանում աղջիկների կողքը նստել, ոմանք ուզում են անպայման վերջին նստարաններին նստել, ոմանք էլ, դե, ինչ իմանաս, պատահում է, իրենք էլ չեն հասկանում, թե ինչու են այդպես վարվում...

Գայանեն մորը լսում էր լուռ և անտարբեր։

Մայրը զգում էր, որ աղջիկը շատ է վրդովված։ Բայց ինչպե՞ս հանգստացնել նրան։

Գայանեն լիք-լիքը աչքերով նայեց մորն ու ասաց.

— Իհարկե, Հովիկը նստեց աղջկա կողք...

Մայրը չնայած դասարանի բոլոր աղջիկներին մեկ առ մեկ գիտեր, բայց չհարցրեց, թե ո՛ւմ կողքին։

— Դու պետք է դրան ոչ մի տեղ չտաս, դա չնչին, դատարկ բան է...

— Քեզ այդպե՞ս է թվում...

— Այո...

— Ես այլևս նրա հետ չեմ խոսի, ես այլևս նրան իմ ընկերը չեմ համարի...

Մայրը ծիծաղեց։



Մայրն ինքն իրեն ժպտաց ու հարցրեց.

— Եվ թող քեզ մոտ չնստեր, ի՞նչ մեծ բան կկորցնեիր, դու ինչո՞ւ վատ զգացիր...

Մոր հարցն այնքան անսպասելի էր, որ Գայանեն կարկամեց.

— Դու պետք է նրա հետ առաջվա նման ընկերություն անես, դեռ առաջվանից էլ լավ, երբեք չպետք է ցույց տաս, որ նեղացած ես...

— Դու կատա՞կ ես անում, մայրիկ։

— Ոչ, ես լուրջ եմ ասում։

# ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍՊԵՆԴԻԱՐՅԱՆԻ ՄԱՍԻՆ



ՄԱՐԻՆԱ ՍՊԵՆԴԻԱՐՅԱՆ

Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

## ԹՂԹԵ ԽԱՂԱԼԻՔՆԵՐ

Սաշային հանգստացնելու համար մայրը մանկասենյակ տարավ մետաքսե թղթերի կույտը և թռչնանման մի խաղալիք սարքեց: Սաշան իսկույն լացը կտրեց: Նա նախ անվստահությամբ նայեց անճոռնի թաթերով ու կտուցով թռչնակին, ապա շրմփալով նետվեց գորգի վրա, թռչնակը տրորելով դարձրեց մի գունդ, հետո եռանդով սկսեց էլի տրորել, մինչև որ նորից ստացվեց թռչնանման մի բան: Թե ինչպիսին պիտի լինի իսկական թռչունը, երեքամյա Սաշան լավ գիտեր: Իր դաստիարակչուհու հետ Կախովկայի փողոցներում զբոսնելիս նա կանգ էր առնում և երկար-երկար նայում ձիու աղբի մեջ կեր որոնող ճնճղուկներին: Ու ինչքան էլ Թաքուշ մորաքույրը փորձում էր նրան տեղից շարժել, նա կանգնում էր այնքան, մինչև ճնճղուկները թռչեին:

Այժմ արդեն մորն անհանգստացնում էր Սաշայի նոր բնավորությունը: Նա այլևս չէր նվնվում ու իր լացով ձանձրացնում տանեցիներին, այլ լռում էր: Տխրելու համար հիմա էլ քիչ պատճառներ չկային: Ամենից առաջ մորաքույր Թաքուշը: Վաղ առավոտյան, երբ Միխայլոն դեռ չէր վառել վառարանը և Դնեպրից փչում էր սառը խոնավություն, դաստիարակչուհին

---

*— Բոլորն ինձ վրա կծիծաղեն:*

*— Հասկացողները չեն ծիծաղի:*

* * *

*Մայրը նորից մոտեցավ պատուհանին:*

*Պատուհանի փեղկի ձայնից վախեցած ճնճղուկները թռան:*

*Գարո՞ւն է...*

*Ողջ բնությունը կենդանություն առած համբուրվում է արևի հետ...*

*Առաջին ծիլն է գլուխը հողից դուրս հանում...*

*Քիչ անց կողքի սենյակից լսվում էր Գայանեի զվարթացած ձայնը. նա դասն էր անգիր սովորում:*

*Այդ դեպքից անցել էր երկու շաբաթ:*

*Գայանեն ներս մտավ՝ խառնված մազերն ուսերի վրա թափած:*

*Աղջիկն ուրախ էր, նա հանդիսավորությամբ պայուսակը դրեց սեղանին ու նայեց մորը:*

*— Գայանե, ինչո՞ւ են մազերդ այդպես խառնըշված...*

*— Դրսում ուժեղ քամի է, մայրիկ...*

*— Իսկ որտե՞ղ է քո ժապավենը...*

*Գայանեն ժպտաց.*

*— Պայուսակիս մեջ:*

*Նա բաց արեց պայուսակն ու այնտեղից զգուշությամբ հանեց ժապավենը:*

*Մայրը կկոցած, զարմացած հայացքով նայեց աղջկա ձեռքին բռնած ժապավենին:*

*—Մայրիկ, գիտե՞ս ինչ արյուն է,—սպիտակ ժապավենի վրա արյան կարմիր հետքերը ցույց տալով՝ ասաց Գայանեն:*

*— Ի՞նչ,— վախեցած հարցրեց մայրը:*

*— Մեծ դասամիջոցին Հովիկի ձեռքը մեխ մտավ. ասում էին երակն էր կտրվել, արյունը այնպես էր գցում, ոչ մեկի մոտ շորի կտոր չկար... Ես իմ ժապավենը տվեցի...*

*Մայրը լուռ լսում էր:*

*— Մայրիկ, դու բարկանո՞ւմ ես...*

*— Ոչ, Գայանե:*

*— Գիտե՞ս, մայրիկ, մի քանի օր առաջ, նա ուզում էր իմ կողքին նստել՝ այն օրը, որ Գագիկը դասի չէր եկել, ես մենակ էի նստած, իսկ ես թույլ չտվեցի, ընկեր Աշխենը բարկանում է, երբ առանց իր գիտության փոխում են տեղերը:*

*— Դու ճիշտ ես վարվել, Գայանե...*

կրնկի վրա բացում էր երեխաների սենյակի դուռը ու բարձր ձայնով ասում.

— Վա՜յ: Դեռ քնած եք: Սա ի՞նչ բան է: Հարկավոր է վեր կենալ,— և նա Սաշայի ու նրա ավագ եղբոր՝ Լյոնյայի վրայից քաշում էր վերմակը:

Աշխարհի երեսին Սաշան ամենից շատ ատում էր ցուրտը և հատկապես առավոտյան ցուրտը: Առաջ նա շապիկով նստում էր անկողնու մեջ և հոնգուր-հոնգուր լաց լինում: Լալիս էր սառը օդի և սառը ջրի երեսից, այն ջրի, որը քիչ հետո սրթսրթացնելու էր նրա այտերն ու վիզը: Հիմա ամեն բան փոխվել էր: Սաշան մորաքույր Թաքուշին թույլ էր տալիս իր հետ վարվել այնպես, ինչպես ուզում էր. արթնացնել, հագցնել, լվացեցնել, նոր կթած կաթ խմեցնել, միայն թե նախաճաշից հետո իրեն մենակ թողնեին իր թռչնակի հետ:

Երբ թռչնակը պատրաստ էր, մայրն այն դրեց գրադարակի վրա և հպարտությամբ ցույց էր տալիս հյուրերին:

— Տաղանդ է, տաղա՜նդ,— ասում էին նրանք և այնպես էին վրա տալիս, որ Սաշան ստիպված էր լինում թաքնվել սեղանի տակ:

Ճնճղուկից հետո նա ուզեց սարքել հոպոպ, ապա՝ ուրուր, հետո՝ արծիվ: Սաշան երբեք արծիվ չէր տեսել, բայց մայրիկն այնպիսի սարսափելի բաներ էր պատմել այդ հզոր թռչունի մասին, որ արծիվը շատ հաջող ստացվեց: Այնուհետև գրադարակի վրա երևացին ձըկնիկներ, ապա՝ ձիեր: Սաշան առանձնակի սեր ուներ դեպի ձիերը: Շուտով գրադարակի վրա ձիերն այնքան շատացան, որ նեղեցին թռչուններին ու ձկներին, և մայրը ստիպված եղավ Սաշայի մահճակալի մոտ դըրված սնդուկը հատկացնել նրան: Երբ մայրիկը, Թաքուշ մորաքույրը, Լյոնյան, Սաշան ու երեք քույրիկները Կախովկայից փոխադրվում էին Սիմֆերոպոլ, նա չմոռացավ ամենից առաջ կառքի մեջ դնել իր սնդուկը:

Սիմֆերոպոլում Սաշան իր համար անկյուն ընտրեց հյուրասենյակում, ռոյալի և գրադարակի արանքում: Մի անգամ մայրիկը հյուրասենյակ բերեց մի ալեհեր պարոնի, որը շատ սև աչքեր ուներ և սպիտակ այտամորուք: Սաշան վեր թռավ տեղից, քստացրեց ոտքը (նա արդեն վեց տարեկան էր) և նորից նստեց գորգին, նախապես գիտենալով, թե ինչ է ասելու մայրը և ինչ է պատասխանելու հյուրը: Բայց անծանոթի պատասխանը բոլորովին ուրիշ տեսակ էր: Մայրը դեռ ոչինչ չէր հասցրել ասել, երբ պարոնը մոտեցավ գրադարակին և սկսեց ուշադրությամբ մեկ առ մեկ կննել բոլոր ֆիգուրները: Ապա նա գրկեց Սաշային և լուրջ-լուրջ ասաց.

— Ապագա քանդակագործ, դրանում ոչ մի կասկած:— Եվ Սաշային նորից հատակին իջեցնելով ավելացրեց.— Լավ կլինի մի երկու-երեքը հետս տանեմ Պետերբուրգ և ցույց տամ ակադեմիայում:

Մայրը բերեց թխվածքի թիթեղյա մի մեծ տուփ, և պարոնը այնտեղ տեղավորեց թղթե թռչուններից, ձըկներից ու ձիերից մի քանիսը: Այնուհետև մայրն ասաց.

— Հրաժեշտ տուր Այվազովսկի պապիկին:

Սաշան նորից քստացրեց ոտքը, իսկ երբ Այվազովսկին դուրս եկավ, նա ուզեց մի անգամ էլ տեսնել նրան և բարձրացավ լուսամուտի գոգը: Ալեհեր պապիկը, որ հռչակավոր նկարիչ Այվազովսկին էր, դուրս եկավ տանից՝ Պուշկինի նման լայն թիկնոցը հագին և ցիլինդրը գլխին: Կառք նստելիս նա նկատեց Սաշային, ժպտաց, ձեռքով արեց և տղայից հայացքը չկտրեց այնքան ժամանակ, մինչև որ կառքը թեքվեց անկյունում ու կորավ աչքից:



## ԱՌԱՋԻՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

Կյանքի ամենավաղ հասակից սկսած սերը դեպի մայրն ու երաժշտությունը Սաշայի մոտ անբաժան էին: Եթե հյուրասենյակից դաշնամուրի ձայն էր գալիս, ուրեմն մայրիկը տանն է և Սաշան հանգիստ է: Սովորաբար մայրը դաշնամուրի մոտ նստում էր շատ տխուր պահերին: Սաշան տոտիկ-տոտիկ հասնում էր մորը, ծվարում նրա լայն շրջազգեստի ծալքերում և ուշադիր լսում: Հետագայում Սաշան իմացավ, որ մայրը նվագում էր իր ծննդավայրի՝ Ղրիմի երգերն ու պարեղանակները: Նա սենյակի կիսախավարի մեջ հազիվ էր

նկատում մոր դեմքը: Հետո ներս էր մտնում Միխայլոն՝ փառվող մոմը ձեռնափայտին ամրացրած: Նա վառում էր պղնձե մոմակալներում դրված մոմերը, և մոր դեմքը դառնում էր այնքան նուրբ ու վարդագույն, ասես մեղրամոմով պատած լիներ:

Սաշան չորս տարեկան էր, երբ նրա մեջ ցանկություն առաջացավ կրկնել այն մեղեդին, որը ծանոթ էր նրան այնպես, ինչպես բարի արջուկի մասին հեքիաթը, որ մայրը պատմում էր քնելուց առաջ: Դա պատահեց մի սովորական օր, իրիկնադեմին: Սաշայի շիկահեր գլուխը, ինչպես միշտ, թաքնված էր մոր շրջազգեստի ծալքերում, և նա տարված էր մոմերի ցոլքերով, որ վետվետում էին մոր ոսկեգույն մազերի մեջ: Հանկարծ լսվեց քրոջ լացի ձայնը, և մայրը հատակին քսելով շրջազգեստի երկար փեշերը, դուրս եկավ հյուրասենյակից: Այս անգամ Սաշան չգնաց նրա հետևից, ինչպես դա լինում էր առաջ: Նա ասես դրան էր սպասում: Իսկույն մագլցելով բարձրացավ աթոռին և ծնկի գալով սկսեց նվագել: Որսալով առաջին նոտաները, նա այլևս չկարողացավ դադարեցնել նվագը. մեղեդին կանչում էր նրան և համառորեն տանում իր հետևից:

Նա ավելի ու ավելի հաճախ էր թողնում թղթից սարքած իր ֆիգուրները և գնում ռոյալի մոտ: Մանկությունից վարժվելով ղրիմյան մեղեդիներին, նա դրանք նվագում էր հափշտակությամբ և հեշտ ու հանգիստ ենթարկվում դրանց սքանչելի ռիթմին: Պակասում էր միայն ներդաշնակությունը: Նորից օգնության էր հասնում հիշողությունը, բայց նա համառորեն հրաժարվում էր այդ շնորհից: Ճիշտ ներդաշնակության բնածին կզգացողությունը նրան համառորեն ստիպում էր որոնել անհրաժեշտ ակկորդները:

Հետո Սաշան նորից վերադարձավ իր քանդակապատկերներին: Եվ մի քանի տարի շարունակ այդ կքաղմունքն ու երաժշտությունը նրան իրենց կողմն էին ձգում գրեթե հավասար ուժով: Բայց հաղթեց երաժշտությունը: Ժամերով նստելով ռոյալի մոտ, նա լսողությամբ կարողանում էր նվագել բոլոր այն պիեսները, թաթարական պարերգերը, պարահանդեսային պարերն ու քայլերգերը, որ նվագում էր մայրը: Յոթ տարեկան էր Սաշան, որ հորինեց մի փոքրիկ վալս: Սաշան շատ արտահայտիչ էր նվագում այդ կենսուրախ վալսը, իսկ այդ պահին կարմիր թավիշով զարդարված հյուրասենյակում պտույտ էին գալիս կանացի երկար ու լայն շրջազգեստները:

## ԿԱՐԱՍՈՒԲԱԶԱՐՈՒՄ

Տոն օրերը Սաշան անցկացնում էր իր մոր ծննդավայրում՝ Կարասուբազար քաղաքում:

Հարթ ճանապարհի վրա գլորվում են անիվները, ձիերը փնչացնում ու ռիթմիկ կերպով սմբակները խփում են գետնին, իսկ դու կառքի մի մութ անկյունում ծածկված՝ ննջում ես...

Վերջին անգամ ցնցվում է կառքը և կանգ առնում: Ուրեմն հասել են Կարասուբազար:

Ամենքից անհամբեր մայրն է: Նա ցած է թռչում կառքից, վազելով մոտենում է դարչնագույն դռնակին և ամբողջ ուժով քաշում կանգակի թելը:

— Վա՜յ, եկան,— լսվում է ներսից:

Բացվում է դռնակը, և Սաշան տեսնում է Կարպ պապիկին, մորաքույրերին, քեռիներին, պարմիկներին, բեղավոր խոհարարին և շատ ու շատ ուրիշ մարդկանց: Բայց Սաշայի համար ամենամեծ ուրախությունը պապիկն է՝ ալեհեր, մեղմ, փոքր ինչ ամոթխած:

Երեխաներին տանում են լվացվելու, ապա սանրում են նրանց մազերը և ուղարկում վերնասրահ՝ համբուրելու Տատյանա տատիկի թմփլիկ ձեռքը:

Այստեղ նույնպես ամեն բան ծանոթ էր Սաշային. տատիկի թե՛ ժանեկավոր թիկնոցն ու ուլունքաշար գլխակարդը, թե՛ լայն բազկաթոռն ու ականջ ծակող սուր ձայնը, որով նա ողջունում էր թոռնիկներին՝ բառերի կեսն արտասանելով ռուսերեն, կեսը՝ հայերեն:

Ազատվելով համբույրներից, տատիկն իր փափլիկ, տեղ-տեղ փոսիկներով պատած ձեռքով շոյում է երեխաների մազերը և հանկարծ բռնում բազկաթոռի բռնակից: Դժվարությամբ բարձրացնելով իր ծանր մարմինը, նա ավելի շատ բվի, քան մարդկային ձայնով ճչում է.

— Սավետ-ջա՜: Գայանա-ջա՜: Զինվոր-Գայանա-ջա՜:

Վախեցած երեխաները փախչում են սրահից, և արդեն հյուրասենյակում Սաշան լսում է բրդյա գուլպաներ հագած ոտքերի դոփյուն ու Տատյանա տատիկի բվանման ձայնը, որ հրամաններ է արձակում:

Կատարյալ իրարանցում է սկսվում տանը: Սաշան քաշվում է ամենահեռավոր սենյակը և մտածկոտ նայում ուլունքներից շինված այն պատկերներին, որ մայրըն արել է մանուկ հասակում: Բայց նրան երկար չեն թողնում մենակ: Զարմիկները Սաշային տանում են ճաշասենյակ, և նրա համար պատրաստած ափսեն անվերջ լցվում է կարասուբազարյան տնային ուտելիքներով:

Հետո պառկում են քնելու:

Իսկ առավոտյան... Ամենահետաքրքիրը առավոտն էր: Տեղեկանալով, որ Կարասուբազար է ժամանել Նատալյա Կարպովնան (այդպես էին ասում Սաշայի մորը), նրան ողջունելու է գալիս թաթարական երաժշտախումբը: Նատալյա Կարպովնան դուրս է գալիս պատշգամբ: Ու չգիտես նրա մետաքսե լայն շրջազգեստի՞, թե՞ ոսկեգույն մազերի պատճառով պատշգամբը երաժիշտների վրա եվրոպական հյուրասենյակի տպավորություն է թողնում: Որպես կանոն, առաջինը միշտ հնչում է Օգինսկու «Պոլոնեզը»: Եվ այն էլ ի՜նչ «Պոլոնեզ»: Ծիծաղից մոր ուշքը գնում է: Կարմիր գոտիով ցմփոր թաթարը մոլեգին կերպով խփում է դհոլին և խլացնում զուռնակի ձայնը, որն իր հերթին

ձգնում է խլացնել կուռնայի ճղճղոցը: Նույնպիսի դղրդոցով հնչում են նաև թաթարական պարեղանակները: Սաշայի տրամադրությունը շատ բարձր է: Մայրը նրա ու Լյոնյայի աչքերն է քաշում փումփուլավոր գլխարկները, հագցնում թավիշե չորերն ու կոլավոր գուլպաները և դուրս բերում Կարասուբազարի փողոցները:



Ահա և նրանք կանգնած են շուկայի «Մութ շարքեր» կոչվող մասի խանութների առաջ: Խանութների դռները բացվում են բարակ սյուներով ծածկի տակ: Ինչե՞ր ասես որ չկան այստեղ. աղջիկների համար կմրուխտե ու շափյուղյա ճարմանդներով թանկարժեք գոտիներ, ոսկեթել երիկներով վառվռուն կապաներ: Մինչ մայրը կփորձեր կարմիր մուճակները, Սաշան ու Լյոնյան նայում են, թե ինչպես կմախքացած Բոյով Թորոսը ժապավենաթելը հյուսում է կաշվե բարձիկին՝ ոսկեգույն թելը ճարպկորեն դեսուդեն նետելով:

Այստեղ՝ Կարասուբազարում, մանկությունից իրեն ծանոթ հասարակ մարդկանց շրջանում մայրը կարող է չկաշկանդել իր կրնգուն ձայնը, մի բան, որ ստիպված է կատարել սիմֆերոպոլյան հյուրասենյակում: Լայն-լայն մուճակները ոտքերը գցելով, նա բռնում է տղաների ձեռքերից և փոշի բարձրացնելով՝ նրանց հետ շրջում Կարասուբազարի փողոցներով:

Իսկ բարիկենդանի՞ն: Ի՞նչ ուրախ է անցնում բարիկենդանը: Մունետիկը բարձր ձայնով հայտնում է բոլոր նորությունները և չխչխկանով ժողովուրդ հավաքում: Նախազգալով մոտալուտ հաճույքը, Սաշան դուրս է վազում դռնակից և աչքերով ուղեկցում չըխչըխկանով թաթարին, որի հետևից գնում է թաթարների մի երկար շարք: Ինչպիսի՜ զվարճություններ ասես, որ չի խոստանում մունետիկը: Սաշան վազում է հյուրասենյակ, քաշքշում մորն ու Լյոնյային, և ահա երեքն էլ շուկայի հրապարակում են: Բազմության մեջ մի քիչ կանգնելուց հետո նրանք բարձրանում են թմբի վրա, որ տեսնեն: Իսկ ի՞նչ տեսնեն. բաճկոնակով փոքրիկ կապիկին, որը պար էր գալիս իր տիրոջ ծործորուն երգի տակ...

Երեկոյան Սաշան մոր հետ նստում է պատշգամբասրահում: Հեռվից գալիս է կուռնա-դհոլի ձայնը: Կարասուբազարի հին սովորության համաձայն պապը լայնորեն բաց է անում դարբասը: Շողշողում են անհամար ջահեր, որ անցնում են նրանց փողոցով: Իրար հետևից քայլում են սատանաներ, թագավորներ, արջեր, ծաղրածուներ... Երկար շարք կազմած՝ նրանք բարձրանում են սանդուղքով, մտնում տուն, լցվում սենյակները, շրջապատում պատրաստած սեղանները, ուտում, խմում և կուռնա-դհոլի ականջ խլացնող ձայնի տակ սկսում պարել «Ղայթարմա»:

## ԳԻՄՆԱԶԻԱՆ

Երբ լրացավ Սաշայի ինը տարին, նրա մոտ սկսեցին ուսուցիչներ գալ: Մինչ այդ նա արդեն կարդացել էր Լյոնյայի բոլոր գրքերը, լուծել բոլոր խնդիրները և նվագել մոր ունեցած պիեսների դեղնած նոտաները: Այնուամենայնիվ նրան սովորեցնում էին կարդալ, հաշվել և ռոյալի վրա վարժություններ նվագել: Կարդալու և հաշվելու գործը հեշտ էր, բայց, ա՜յ, վարժությունները նվագե՜լը... Ի՞նչ կարելի էր սովորել, եթե լայնեզր գլխարկով տիկինը չէր էլ նայում նրա ձեռքերին և իր նողկալի ձայնով անվերջ կրկնում էր.

— Մատներդ բարձր, ավելի բարձր,— և Սաշան ամբողջ ուժով ձգնում էր մատները բարձրացնել վեր, թեև վաղուց գիտեր, որ երաժշտական հնչյունը կարելի է ստանալ միայն այն ժամանակ, երբ ձեռքը թույլ են պահում:

Ուսուցչուհու գնալուց հետո Սաշան իսկույն դուրս էր թռչում: Կորչի՜ ռոյալը: Բայց պարտեզի դռնակին էր մոտենում հայկական եկեղեցու տիրացուն, Սաշան սիրում էր հայոց լեզվի դասերը: Նա արդեն գիտեր գրել իր անունը և անգիր ասել «Հայր մերը»:

Մինչև մայրը չբարկանար վրան, Սաշան ռոյալի

մոտ չէր նստում: Իսկ շուտով բոլորովին հրաժարվեց ռոյալից՝ գերադասելով անկյուն կանգնել: Վերջապես ընտանեկան խորհրդում, երբ Սաշան արցունք հեղելով ասաց, որ ատում է երաժշտությունը, ուսուցչուհուց ձեռ քաշեցին:

Ֆրանսերենի դասերն անցնում էին ուրախ, ասես խաղ լինեի: Այն սենյակում, որտեղ տեղի էին ունենում պարապմունքները, մեծ բազմություն էր հավաքվում. Լյոնյան, քույրերը, մորաքրոջ աղջիկներն ու տղաները: Բոլորը նայում էին, ծիծաղում, իսկ ամենից բարձր՝ դասատուն, օրիորդ Բյուրնանը:

Սաշան ապատ շունչ քաշելու ժամանակ չուներ: Ցտեսությո՛ւն, իսկական մանկություն, երբ կարելի էր ուզածիդ չափ նկարել, խաղալ, ռոյալ նվագել: Սաշայի մոտ երևան եկավ նոր ցանկություն՝ նկարել, բայց դե երաժշտությունից սիրտը չէր կտրվում. մոր հետ գնում էր այգիները և լսում խաղողագործների կոկորդային երգերը...

Ահա և, վերջապես, գիմնազիան: Սկսած այն պահից, երբ Լյոնյան սովորում էր այնտեղ, Սաշային թվում էր, թե նա անվերջ բարձրանում է սարն ի վեր, որի գագաթին գտնվում է գիմնազիան՝ ուրախություններով ու խնդություններով լեցուն:

Բայց իրականում այդպես չէր: Առաջին իսկ օրվանից Սաշան գիմնազիայում իմացավ, թե ինչ բան է «ուժի իրավունքը»:

Նրա կողքին նստող տղան թշնամաբար էր նայում նրան: Դասամիջոցներին նրան կսմթում էին, կտտացնում քթին, հրում... Կարելի էր գանգատվել Լյոնյային, բայց Սաշան գերադասում էր չ[illegible] այդ [illegible] «իրավունքը»: Մի անգամ, երբ լայնաթիկունք մի կռվարար տղա ուժ գցեց Սաշային ու շրմփացրեց հատակին, հանկարծ վրա եկավ Լյոնյան և հասցրեց նրան:

Ու մի օր էլ Սաշան սուսուփուս մտավ հանդիսասրահը: Այնտեղ ոչ ոք չկար: Նա մեքենաբար մոտեցավ ռոյալին, բաց արեց կափարիչը և սկսեց կամաց նվագել: Հետո տարվեց երաժշտությամբ ու նվագեց ավելի ու ավելի բարձր: Բայց սա ի՞նչ բան է. հանկարծ դահլիճ ներխուժեցին իրեն հալածող բոլոր տղաները... Սաշան շրխկացրեց կափարիչը և ուզեց փախչել: Բայց ինչ-որ մեկը նորից բաց արեց կափարիչը:

— Նվագի՛ր, նվագի՛ր,— աղաղակեցին այս ու այն կողմից:

— Դե, շուտ, ի՞նչ ես նստել:

Եվ Սաշան ենթարկվեց նրանց կամքին: Նվագեց և կամաց-կամաց սկսեց ոգևորվել...

Գիմնազիայում այլևս չար տղաներ չկային, իսկ դասարանցիները ուղղակի սիրահարված էին նրան: Սաշան շուտով մոռացավ նրանց տված բոլոր վիրավորանքները:

(Շարունակելի)

# ՍՈՐԲՈՆԻ ԱՎԱԶԱՆԻ ԿՈՒԺԸ

*Երիտասարդ Այվազովսկին նկարչական կրթությունը շարունակելու նպատակով գնում է Փարիզ և ներկայանում համալսարանի գեղարվեստական ճյուղի պրոֆեսորին ու խնդրում, որ իրեն ընդունեն որպես ուսանող: Պրոֆեսորը մի կուժ է տալիս երիտասարդ նկարչին և ասում, որ համալսարանի պարտեզի ցայտաղբյուրի ավազանից ջուր բերի: Այվազովսկին մտնում է պարտեզ և ի՞նչ տեսնում... Պարտեզի կենտրոնում ընդարձակ մարմարի վրա խոշոր ավազանով ցայտաղբյուրի գեղեցիկ մի պատկեր է նկարված: Ցայտաղբյուրի ջրի փոքր կաթիլները այնպե՜ս բնական էին թափվում ավազանի մեջ: Ցայտաղբյուրի ամբողջ ջուրը կարծես շարժվում էր՝ բնական ջրի փրփրացող մի հոսանք առաջացնելով նկարի վրա: Այվազովսկին մի պահ հիանում է, ապա հիշում իրեն արված հանձնարարությունը: Բայց ինչպե՞ս ազատվել այդ անելանելի վիճակից: Այվազովսկին խելքին գանում է ելքը. ավազանի մեջ նկարում է սատկած շան լակոտ՝ ուռած փորով, պառկած մարմնով: Որից հետո դատարկ կուժը ձեռքին ներկայանում է պրոֆեսորին և ասում.*

*— Պարոն պրոֆեսոր, չկարողացա ջուր բերել, որովհետև ցայտաղբյուրի ավազանի մեջ շան լակոտի նեխած դիակ կա:*



*Պրոֆեսորը անմիջապես շտապում է պարտեզ և երբ տեսնում է Այվազովսկու նկարած շան լակոտը, հիանում է: Նա անմիջապես Այվազովսկուն ընդունում է համալսարան՝ հայտնելով, որ շատ ուսանողներ կուժը խփել են մարմարյա ավազանին ու փշրել:*



# ՇՈԹԱ ՌՈՒՍԹԱՎԵԼԻ

## ՎՐԱՑ ՄԵԾ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ

Գագիկը խորասուզված, յուրաքանչյուր տողը կլանելով ընթերցում էր Հովհաննես Թումանյանի երկերի առաջին հատորը։ Նրան շատ դուր եկավ «Նվեր Վրաստանի բանաստեղծներին» ստեղծագործությունը և ուղղում անջնջելի կերպով տպավորվեց այն քառատողը, ուր գրված է.

*Դեռ չի լռել մեծ Շոթայի*
*Երգի ձայնը կաթոգին...*

«Իսկ ո՞վ է մեծ Շոթան»,— մտածեց Գագիկը և վազեց հոր մոտ։

— Հայրիկ, ո՞վ է մեծ Շոթան, որի երգի ձայնը դեռ չի լռել...

Հայրը գրապահարանից հանելով մի մաշված, դեղնակազմ գիրք, ասաց.

— Ահա այս գրքի հեղինակն է, վրացական մեծ բանաստեղծ Շոթա Ռուսթավելին։

Գրքի վրա խոշոր տառերով գրված էր «Վագրենավորը»։

Գագիկի հետաքրքրությունն ավելի բորբոքվեց.

— Հայրիկ, կպատմե՞ս ինձ այդ հեղինակի մասին։

— Ես կպատմեմ որոշ բաներ, որդիս, բայց, անշուշտ, դու դրանով չես բավականանա. երբ մեծանաս, այս գիրքը կդառնա քո սիրած գրքերից մեկը...

Շոթա Ռուսթավելին ապրել և ստեղծագործել է շատ ու շատ տարիներ առաջ, երբ Վրաստանում իշխում էր Թամար թագուհին։ Նրա օրով աճեց ու հզորացավ երկրի տնտեսությունը, ծաղկեցին արվեստն ու գրականությունը և այդ ժամանակաշրջանը կոչվեց վրացական կուլտուրայի ոսկեդար։ Այս ոսկեդարի ամենամեծ ներկայացուցիչը և ամենազարգացած մարդը Շոթա Ռուսթավելին էր։ Նրա «Վագրենավորը» մեծածավալ պոեմը թարգմանված է բազմաթիվ լեզուներով և համարվում է համաշխարհային գրականության գոհարներից մեկը։

«Վագրենավորի» հերոսները՝ Ավթանդիլը, Տարիելը, Փրիդոնը և մյուսները անշահախնդիր, անձնուրաց մարդիկ են, ընկերական սերը նրանք ամեն ինչից բարձր են դասում և հանուն փոխադարձ բարեկամության, պատրաստ են զրկվել իրենց ողջ հարստությունից, զոհաբերել իրենց կյանքը։ Ահա թե ինչ է ասում այդ հերոսներից մեկը. «Ընկերը պետք է իր ընկերոջ համար կրի բոլոր նեղությունները և սիրտը տա նրան սրտի տեղ, որպեսզի սերը լինի նրանց միավորող կամուրջ և ճանապարհ»։

Եվ, իրոք, այդ հերոսների խոսքը գործից չի տարբերվում։ Արաբիայի Ռոստևան թագավորի հոգեզավակ և զորավար Ավթանդիլը, հեռանալով արքայական պալատից, երկար որոնումներից հետո գտնում է անպարտելի հերոս Տարիելին, որը անձնական խորունկ վիշտը ցրե-

### ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐ «ՎԱԳՐԵՆԱՎՈՐԸ» ՊՈԵՄԻՑ

*Պետք է բանվորն՝ աշխատասեր, զինվորը քաջ կռվող լինի։*

*Ինչ որ բաշխես, հենց այն է քոնը, ինչ խնայես, կորած է նա։*

*Վշտից պետք է փնտրել մի ելք և ոչ թե սիրտը տալ նրան։*

*Թշնամացած բարեկամը թշնամուց էլ վատ է։*

*Բժիշկն ինչպե՞ս պիտի բուժի, եթե ցավը չասեն նրան։*

լու համար թափառում էր սարերում ու անտառներում։ Տարիելի հագուստն ու գլխարկը վագրի մորթուց էին, այդ պատճառով էլ պոեմը կոչվում է «Վագրենավոր»։

Երբ Ավթանդիլը ծանոթանում է Տարիելի կյանքի տխուր պատմությանը, որոշում է օգնել նրան, դառնալ նրա զինակիցը և չվերադառնալ հայրենիք, քանի դեռ Տարիելը չի հասել իր նպատակին։ Նրանց միանում է նաև Փրիդոն թագավորը և իր ողջ զորքն ու զինամթերքը դնում նրանց տրամադրության տակ։ Եվ այդ երեք դյուցազուններն իրենց զորավարական հմտությամբ ու անձնական խիզախությամբ գրավելով Քաջաստանի Քաջեթ բերդը, գերությունից ազատագրում են Տարիելի սիրած աղջկան՝ Նեստան Դարեջանին։

Ոչ պակաս քաջ և առաքինի, ազնիվ ու անձնվեր են նաև պոեմի հերոսուհիները՝ Նեստան Դարեջանը, Թինաթինան, Ասմաթը։ Նրանք դժբախտության պահին ցուցաբերում են մեհերոսություն և օգնության հասնում իրենց ասպետներին։ Նրանք չեն սիրում թուլակամ և լալկան տղամարդկանց և, ոգևորվելով իրենց հերոսների քաջությամբ, մղում են նրանց նորանոր սխրագործությունների։

Ոչ միայն անզուգական արվեստով, այլև առաջադեմ գաղափարներով, «Վագրենավորի» հեղինակը բարձր է կանգնած եղել իր ժամանակակիցներից, այդ պատճառով էլ նրա անմահ ստեղծագործությունը մինչև այսօր չի կորցրել իր թարմությունը։

Լրացավ վրաց մեծ բանաստեղծ Շոթա Ռուսթավելու ծննդյան 800-ամյակը։

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

# ՈՎՔԵՐ ԵՆ ՄԵՐ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ

Բոլոր հարցերին ճիշտ պատասխանողները կպարգևատրվեն առաջին կարգի հուշանվերով։ Երկրորդ կարգի հուշանվերի կարժանանան նրանք, ովքեր կպատասխանեն ոչ պակաս, քան 12 հարցի։

Խմբագրությունը պատասխանները պետք է ստանա ոչ ուշ քան նոյեմբերի 30-ը։ Բոլոր հարցերի պատասխանները կարելի է գտնել «Պիոների» 1966 թ. 1—9 համարներում։

*1. Ո՞վ էր 13-րդ դարի այն խոշոր հայ պատմագիրը, որը մեծ գովեստով է խոսել Բաղաբերդի մասին։*

*2. 1913 թ. Փարիզում ֆրանսիացի նշանավոր գրողներից մեկը անմահ Կոմիտասի կատարմամբ լսել է հայ ժողովրդական մեղեդիները և ասել, որ եթե ինքը ավարտած չլիներ իր վեպը, ապա կոմիտասյան ոգին կգեղեցկացներ իր հերոսին։ Ո՞վ էր այդ գրողը։*

*3. Ո՞վ էր այն ալեհեր պարոնը, որը զննելով Սաշայի պատրաստած թղթե ֆիգուրները ասաց. «Ապագա քանդակագործ, դրանում ոչ մի կասկած»։*

*4. Անգլիացի ֆիզիկոս Հարրի Պրայսը ինչո՞ւ էր Հնդկաստանից Լոնդոն հրավիրել հայտնի կախարդ Ահմեդ Հուսայինին։*

*5. Ինչո՞ւ գորտերը, միջատները և ձկների որոշ տեսակներ տեսնում են միայն շարժվող առարկաները։*

*6. Արագածի մերձգագաթային սարահարթում կա մի լիճ, որի շրջագիծը հավասար է 4 կիլոմետրի։ Ինչպե՞ս է կոչվում այդ լիճը և քանի՞ մետր բարձրության վրա է գտնվում։*

*7. Երբ Վաղարշակը գնացել էր կայարան և հիվանդանոցը շրջապատել էին մի խումբ ֆաշիստ զինվորներ ու քաղաքացիական հագուստով մարդիկ, նկուղում ո՞վ էր ռադիոկապ պահպանել մեր հայրենիքի հետ։ Ինչպե՞ս էր նրա հետախուզական անունը։*

*8. «Մոտենում էինք Ծակ քարին, մեզանից ամենասրտոտը՝ Քաջ Բազուկն անգամ հիմա հազիվհազ է սողում առաջ... Մի սխալ քայլ, մի սայթաքում, և կգահավիժեինք անդունդը, փշուր-փշուր կլինեինք։ Իսկ ի՞նչ կար առջևում. հանդիպում մարդասպանի հետ, հանդիպում, հետո ինչ...» Ո՞ր ստեղծագործությունից են վերցված այս տողերը և ո՞վ է նրա հեղինակը։*

*9. Մեր երկրում ինչո՞վ նշանավորվեցին 1966 թ. փետրվարի 3-ը և ապրիլի 3-ը։*

*10. Գիշերվա ժամը տասներկուսին փոքրիկ Անրին ի՞նչ խոսքեր պետք է կրկներ, որ նրան պատվիրել էր բարի կախարդը։*

*11. Անծանոթ մոլորակի վրա նավապետը ինչո՞ւ էր պառկել գետնին, ափերով տրորում հյութեղ, գլխապտույտ առաջացնող բույրով խոտը և դեմքը քսում խոնավ հողին։ Ովքե՞ր էին նրա ուղեկիցները և ինչո՞ւ էր նրանց տարօրինակ թվում նավապետի արարքը։*

*12. Ո՞վ էր այն նշանավոր ճանապարհորդը, որի անունով կոչվում է Հյուսիսային սառուցյալ օվկիանոսի ծովերից մեկը։*

*13. Ովքե՞ր էին այն տղաները, որոնք էքսկուրսիայի ժամանակ խեղդվելուց փրկեցին փոքրիկ Կարապետին։*

*14. Սերգեյն ու իր ընկերը ինչի՞ համար էին գիշերին գնում դեղատնից։*

*15. Ի՞նչ է Հունաստանի համալսարանի այն դասախոսի անունը, որը գիտե 120 լեզու և բարբառ։ Քանի՞ լեզվով է նա դասախոսություններ կարդում։*

*16. Ինչո՞ւ էր Մելլին փախել լիլիպուտների երկրից։*



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

## ԽԱՉԲԱՌ

1—2. Արոտ՝ հայ դիցաբանության մեջ: 1—3. Քաղաք՝ հին Հայաստանում: 2—4. Քաղաք՝ Թուրքիայում: 3—5. Քաղաք՝ Լեհաստանում: 4—6. Քաղաք՝ Սև ծովի ափին: 5—7. Գ. Սունդուկյանի վեպի ներոսներից: 6—8. Սովետական գրող: 7—9. Քաղաք՝ Բրազիլիայում: 8—10. Նորվեգացի դրամատուրգ: 9—11. Վրաց ազգային հերոս: 10—12. Նույնանուն գետ և քաղաք՝ Եվրոպայում: 11—13. Կապի միջոց: 12—14. Ջրային տրանսպորտ: 13—14. Հողատեսակ:



Կազմեց Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆԸ

## Պատասխանում ենք

«ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ» («Պիոներ» № 5)—1. Տիցիան Վեչելլիո, ստեղծագործել է 16-րդ դարում: Նրա աշխատանքներից են՝ «Քրիստոսն ու Դինարին», «Վեներան հայելու առաջ», «Կառլոս 5-րդի դիմանկարը», «Ինքնանկարը» և այլն: 2. «Դպրոցականի դիմանկարը» պատկանում է Վինցենտ Վան-Գոգի վրձնին:

«ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ» («Պիոներ» № 6)—1. Պաբլո Պիկասսո (Ֆրանսիա): 2. Կլոդ Մոնե՝ իմպրեսիոնիզմի հիմնադիրներից: 3. Վրուբել, «Իսպանիա», «Վենետիկ» մեծածավալ կտավները, «Դևը» պոեմի նկարազարդումները և մի շարք դիմանկարներ:

«ՊԻՈՆԵՐ» №7

«ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ» — 1. Ֆրանսիացի խոշորագույն նկարիչ Օգյուստ Ռենուարը իմպրեսիոնիստական արվեստի փայլուն ներկայացուցիչներից է: Նրա գործերից շատերը պահվում են աշխարհի լավագույն թանգարաններում, ինչպես և Մոսկվայում ու Լենինգրադում: Դրանցից են «Մուլեն դը լա Գալետ», «Օթյակ», «Մերկ կինը», «Սևազգեստ աղջիկները», «Այգում» և այլ աշխատանքներ: 2. Հուշարձանը գտնվում է Գեղարդում, Ազատ գետի ափին, Պառոշ պարոնի գամբարանի վերևում. պարոնի զինանշանն է:

«ԽԱՉԲԱՌ» — Ուղղահայաց — 1. Գառնի: 3. Արև: 4. Նավթ: 7. Նաւր: 8. Ուֆա: 10. Վիտիմ: 12. Օխա: 14. Լիզա: 16. Ուրալ: 17. Կին: 18. Օկա: 20. Նուկուս: 22. Լոր: 23. Նալչիկ:

Հորիզոնական — 1. Գարի: 2. Ռոմնա: 4. Նարվա: 5. Թալին: 6. Բու: 7. Նա: 9. Ֆեդչենկո: 11. Իլիկ: 13. Խերսոն: 15. Իլի: 18. Օլոնեց: 19. Արալի: 21. Ուժ:

«ԲԱՌԱՇՂԹԱ—ԽԱՉԲԱՌ» — 1. Կիսալովզակ: 2. Կիրկուկ: 3. Կուրսկ: 4. Կաքավիկ: 5. Կոնյակ: 6. Կարա—կալպակ: 7. Կապիկ: 8. Կալմիկ: 9. Կոտիկ: 10. Կոպեկ: 11. Կազբեկ: 12. Կոբեկ: 13. Կաչաղակ: 14. Կվերեկ: 15. Կրակ: 16. Կաթնըեկ: 17. Կոզակ:

«ԿԱՐՈ՞Ղ ԵՍ, ԳՏԻՐ» — ընդհանուր գումարը 80 է:


Գլխավոր խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ալ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 04689: Պատվեր՝ 1444: Տպաքանակ՝ 16 816: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 30/VIII, 1966 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ: Երևան,

Գինը՝ 20 կ.

ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ

## ԽԱՉԲԱՌ (մայրաքաղաքներ)

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ.— 3. ՍՍՀՄ-ին սահմանակից ասիական պետության մայրաքաղաք: 7. Նիգեր գետի գետաբերանում գտնվող պետության մայրաքաղաք: 8. Մայրաքաղաքը մի պետության, որի սահմանները ողողում են և Ատլանտյան օվկիանոսի, և Միջերկրական ծովի ջրերը: 9. Մայրաքաղաքը այն երկրի, որտեղ ապրում էր նշանավոր գրող Հեմինգուեյը: 10. Պիրենեյան թերակղզու այն պետության մայրաքաղաքը, որտեղ ապրել ու ստեղծագործել է «Դոն Կիխոտ» գրքի հեղինակը: 12. Մայրաքաղաք, որտեղից սկսվել են քաջ զինվոր Շվեյկի արկածները: 14. Կարաիբյան ծովի ափին գտնվող պետության մայրաքաղաք: 15. Գվինեայի ու Լիբերիայի սահմանակից պետության մայրաքաղաք: 23. Մայրաքաղաք՝ Աֆրիկայի ամենամեծ գետի ափին: 24. Մայրաքաղաք՝ Եվրոպայում, որի վրայով անցնում է 0° միջօրեականը: 25. Ինքնավար հանրապետության մայրաքաղաք, որ գտնվում է աշխարհի ամենամեծ լիճը թափվող Եվրոպայի ամենամեծ գետի ափին: 26. Միջերկրական ծովի ափին գտնվող պետության համանուն մայրաքաղաք: 27. Մայրաքաղաք, որտեղ գտնվում է անտիկ Պարթենոն տաճարը, որը քանդակազարդել է հին աշխարհի մեծ քանդակագործ Ֆիդիասը:

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.— 1. Մայրաքաղաք՝ Ատլանտյան օվկիանոսի ափին, Կանաչ հրվանդանի վրա: 2. Ֆրանսիայի տերիտորիայով շրջապատված շատ փոքր պետության մայրաքաղաք, որ կոչվում է հենց երկրի անունով: 7. Ադրիատիկ ծովի ափին գտնվող պետության մայրաքաղաք: 5. Մայրաքաղաք՝ Տիգրիս գետի վրա: 6. Մայրաքաղաք, որտեղ գտնվում են Լուվրի թանգարանն ու էյֆելյան աշտարակը: 11. Մայրաքաղաքը այն պետության, որտեղ գտնվում են աշխարհի ամենաերկար պարիսպն ու ամենաերկար ջրանցքը: 13. Սովետական հանրապետության մայրաքաղաք: 16. Սովետական հանրապետության մայրաքաղաք Միջին Ասիայում: 17. Մայրաքաղաք՝ Արևմտյան Աֆրիկայում: 18. Մայրաքաղաք՝ Դնեպրը գետի վրա: 19. Մայրաքաղաքը այն երկրի, որտեղ ըստ



ավանդության շատ դարեր առաջ ստեղծվել է շախմատ (ճատրակ) իմաստուն խաղը: 20. Մայրաքաղաքը այն պետության, որ սահմանակից է Պակիստանին, Հնդկաստանին, Չինաստանին, Լաոսին և Տաիլանդին: 21. Ծովային սահմաններ չունեցող պետություններից մեկի մայրաքաղաքը Հարավային Ամերիկայում: 22. Կղզիների վրա գտնվող պետության մայրաքաղաք, որն իր բնակչության թվով առաջինն է աշխարհում:

Կազմեց ԿԱՐԼԵՆ ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԸ

## ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ



«Ձի թամբող մարոկկացին» նկարը ցուցադրվում է Լենինգրադի Էրմիտաժում: Այդ կտավի հեղինակն ապրել է 19-րդ դարում և հայտնի է իբրև ռոմանտիզմի դասական ներկայացուցիչ:

Ինչպե՞ս է նրա անունը և ի՞նչ գործերով է նա հայտնի:



Այս դիմանկարը պատկանում է մեր ժամանակի խոշորագույն նկարիչներից մեկին, որն ապրեց կարճ ու ողբերգական կյանք:

Ո՞վ է այդ նկարիչը և ուրիշ ի՞նչ աշխատանքներ գիտեք նրանից:

20 կ. ինդեքս 77806

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՐԻԿՆԵՐԸ



ԱՐԵՎՈՏ ՕՐ

ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ԷԴԻԿ
Երևան, 6 տ.



ՊԱՐՈՒՀԻ

ՀՈՒՐՈՒՆՑ ՄԱՅ
Երևան, 7 տ.



ՄԵՐ ՍԵՆՅԱԿԸ

ԱՍԱՏՐՅԱՆ ԱՐԵԳ
Երևան, 8 տ.